Իմ անունը Սեդա է, բայց ամբողջ աշխարհն ինձ կանչում է Լիլի: Ամեն առավոտ ես ելնում եմ բակ, ընկուզենու տակ հացի փշրանքներով կերակրում քեռի Հայկի աղավնիներին, ապա արտասանդուղքով բարձրանում և երեք անգամ թակում կապույտ ներկված դուռը:

—Այսօր հայրիկը ե՛ս եմ,— դուռը բացելով, հայտարարում է Անահիտը:

—Ո՛չ,— հակառակում եմ ես:— Այսօր հայրիկը ե՛ս եմ:

—Դու երկու օր հայրիկ եղար,— առարկում է Անահիտը:— Այսօր հայրիկը ե՛ս եմ:

—Հետո ի՞նչ,— բողոքում եմ,— երեկ հայրիկը դու էիր, իսկ այսօր հայրիկը ես եմ:

—Դու լավ հայրիկ չես,— ասում է նա:

—Այսօր լավը կլինեմ,— մեղմությամբ համոզում եմ ես:

—Անցյալ անգամ դու ինձ ծեծեցիր,— գլուխը խոնարհելով ասում է նա:

—Հիմա ես քեզ շատ եմ սիրում,— շշնջում եմ գորովանքով և համբուրում նրա այտերը:

Դրանից հետո, իհարկե, հայրիկը ես եմ: Մենք ունենք Նոնի անունով մի կատու և տուն, որը զբաղեցնում է մորաքույր Վարդուշի նկուղի անկյուններից մեկը: Առաջ ապրում էինք արտասանդուղքի տակ: Անցյալ ամիս մորաքույր Վարդուշը մեզ բնակարան առաջարկեց: Մենք չհրաժարվեցինք, որովհետև դրա համար որևէ պատճառ չկար:

Անահիտը կերակուր է պատրաստում, իսկ ես խնամում եմ տանտիրուհու բանջարանոցը, որովհետև հայրիկը պետք է աշխատի: Մեր դերերը փոխվում են համարյա օր ու մեջ, և մենք աշխարհում ամենաերջանիկ երեխաներն ենք:

Ամռան վերջին անսպասելի լրացավ իմ յոթը տարին.

—Լիլի՛, տուն արի,— դրանից մի քանի օր հետո պատուհանից կանչեց մայրիկը:

—Չե՛մ կարող: Այսօր հայրիկը ես եմ:

Կարճ ժամանակից նա ինձ նորից ձայն տվեց. Ես մտածեցի, որ այնտեղ մի բան կա, և չսխալվեցի: Ներս մտնելով, բազմոցին տեսա դպրոցական պայուսակ և զգուշությամբ մոտեցա:

—Սա քոնն է,— ժպտաց մայրիկը:



ՆՈՐԱՅՐ ԱԴԱԼՅԱՆ

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1961 թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

—Դու արդեն մեծ ես,—մազերս շոյելով ասաց հայրիկը:

—Սրանից հետո դու պետք է միայն դասերդ պատրաստես,—շարունակեց իմ եղբայր Տիգրանը:

—Մի՛ գրվեք,—ասաց մայրիկը:—Ճաշն արդեն պատրաստ է:

Ես իմ եղբայր Տիգրանին հասկացնել տվի, որ ուզում եմ նրա հետ առանձին խոսել: Ճաշից հետո մենք աննկատելի մտանք ննջարան և ներսից բանալիով փակեցինք դուռը:

—Ի՞նչ ես ուզում,—հետաքրքրվեց իմ եղբայր Տիգրանը:

—Ամեն ինչ պատմիր դպրոցի մասին,—խնդրեցի ես:

—Վերջացավ քո ազատությունը,—ասաց նա:—Դու գերի ես: Հիմա մենք իրար շատ ենք նման:

—Ոչինչ չի՞ կարելի անել:

—Գրեթե ոչինչ:

—Միևնույն է, վաղը չէ մյուս օրը հայրիկը նորից ես կլինեմ:

—Քո գործը մի քիչ հեշտ է,—ասաց իմ եղբայր Տիգրանը:—Իսկ ես տղա եմ: Երբ դասերը սկսվեն, մնաս բարով, գնդա՛կ: Զրաշատ փողոցի տղաները շատ կռվարարներ են. որովհետև ես մեր փողոցի ամենաուժեղ ինքը համարն եմ:

Հաջորդ առավոտյան մայրիկը ինձ լողացրեց, նոր շրջազգեստ հագցրեց և խնամքով հավաքեց մազերս սպիտակ ժապավենի օղակի մեջ:

—Լիլի՛, վերցրու պայուսակդ:

Մենք տանից դուրս եկանք, անցանք բակի միջով և կտրեցինք երեք փողոց: Առաջ ես կարծում էի, թե աշխարհը սկսվում է մեր տանից և վերջանում քեռի Հայկի ցախանոցի մոտ: Եվ ահա պարզվեց, որ նա ավելի ընդարձակ է: Երբ մոտեցանք մի մեծ շենքի, ես երկյուղեցի այդ օտարությունից:

—Սա դպրոցն է,—ասաց մայրիկը:—Ներս մըտնենք:

Աստիճանների վրա հանդիպեցինք մի երիտասարդ կնոջ և կանգ առանք:

—Դու Լիլի՞ն ես,—ժպտալով հարցրեց երիտասարդ կինը:

—Այո:

—Ես քո ուսուցչուհին եմ,—ասաց նա:—Ուզու՞մ ես մենք բարեկամներ լինենք:

—Ոչ,—պատասխանեցի:—Ես ուզում եմ տուն գնալ:

Նա ծիծաղեց և ասաց, որ ես սիրունիկ աղջիկ եմ: Հետո մենք անցանք երկար միջանցքով և մտանք լուսավոր մի սենյակ, որտեղ շատ երեխաներ կային: Ես շուրջս նայեցի և Անահիտին չըտեսնելով, լաց եղա:

—Ուզու՞մ ես իմ կողքին նստել,—այդ ժամանակ հարցրեց մի տղա, որն այնպես մտերմաբար էր ժպտում, կարծես մենք վաղուցվա ծանոթներ լինեինք,

—Ուզում եմ,—արցունքներս սրբելով ասացի ես:

—Ի՞նչ է անունդ,—երբ նստեցինք, հարցրեց տղան:

—Լիլի: Իսկ քո անունը ի՞նչ է:

—Իմ անու՞նը... Հրայր է: Դու որտե՞ղ ես ապրում:

—Մեր բակում,—ասացի ես:—Իսկ դու որտե՞ղ ես ապրում:

—Ես ապրում եմ Պռոշյան փողոցում: Մենք կարող ենք միասին տուն գնալ:

—Դու ճանապարհը գիտե՞ս:

—Ճանապա՞րհը... Իհարկե:

Ուսուցչուհին մեկ-մեկ հարցրեց բոլորի անունները, հետո պատմեց մի հեքիաթ գեղեցիկ իշխանուհու և տասնմեկ կարապների մասին: Երբ նա վերջացրեց, միջանցքում մեծ աղմուկ բարձրացավ:

—Սա ի՞նչ է,—հարցրի ես:

—Զանգը տվեց,—պատասխանեց տղան:

Մենք վերցրինք պայուսակները և դասարանից դուրս վազեցինք:

—Այսպես գնանք,—փողոցում ձեռքս բռնելով, ասաց տղան:

— Ո՛չ, ասացի ես։— Այնպես գնանք։

Արևոտ օր էր։ Փողոցները բազմամարդ էին։ Շողշողուն մեքենաների և զրնգուն տրամվայների տեսքից գլուխ էր պտտվում։

— Առաջ դու ի՞նչ էիր անում,— մի տեղ հարցրեց տղան։

Ես ասացի.

— Անահիտի հետ տուն-տուն էի խաղում։ Երեկ հայրիկը ես էի։ Իսկ դու ի՞նչ էիր անում։

— Ի՞նչ էի անում։ Ես էլ տուն-տուն էի խաղում։

— Դու հայրիկ շա՞տ էիր լինում։

— Ես միշտ հայրիկ էի լինում։

— Երևի դու լավ հայրիկ ես։

— Ե՞ս... Իհարկե, լավ հայրիկ եմ։

Բարձր մի շենքի առաջ մենք ավելի ամուր բռնեցինք իրար ձեռք, որովհետև ընկանք մարդկային հոսանքի մեջ և վախեցանք իրար կորցնել։ Թեքվեցինք նեղ մի փողոց, բարձրացանք քարե աստիճաններով և դուրս եկանք ընդարձակ հրապարակ։

— Այնպես գնանք,— ասաց տղան։

— Ոչ,— ասացի ես։— Այսպես գնանք։

Եվ մենք ծիծաղելով վազեցինք հրապարակի ուղիղ մեջտեղով, իսկ ուրիշները երկար կիսաշրջան էին անում։ Դրանից հետո երկու փողոց էլ կտրեցինք։

— Մեր քայլը,— ուրախացած բացականչեցի ես։

— Մեր փողոցը,— ուրախացած բացականչեց տղան։

— Ուզու՞մ ես ամեն օր մայրիկը ես լինեմ, իսկ հայրիկը՝ դու,— կանգ առնելով, հարցրի ես։— Դու շատ լավ հայրիկ ես։

— Ուզում եմ,— ասաց տղան։

— Համբուրիր ինձ։

Նա համբուրեց այտս և նապաստակի պես վազեց փողոցն ի վեր։

— Ամեն օր մայրիկը ես եմ,— բակում հանդիպելով Անահիտին, ասացի ես։

— Իսկ ես ամեն օր հայրիկ եմ։

— Ոչ,— ասացի ես։ Ամեն օր հայրիկը Հրայրն է։

Նա ամեն ինչ հասկացավ և գնաց տխուր նստեց արտասանդուղքին։

Հաջորդ առավոտ մենք հանդիպեցինք փողոցում։

— Բարև՛,— ասաց տղան։

— Բարև,— պատասխանեցի ես։

— Ո՞ւր ես գնում,— հարցրեց տղան։

— Դպրոց եմ գնում,— ասացի ես։— Իսկ դու ո՞ւր ես գնում։

Բանից պարզվեց, որ երկուսս էլ դպրոց էինք գնում։ Երբ մտանք դասարան, երեխաները մեզ իսկույն շրջապատեցին։

— Երեկ դուք փախել եք դասից,— աչքերը ոլորելով ասաց Կարոն։



— Պատուհանից ես ձեզ տեսա,— դեմքը ծռմռելով, վրա բերեց կարմիր ժապավենով մի աղջիկ։

— Դուք թաքնվեցիք երեք հարկանի շենքի հետևը,— բարկացավ գանգուր մազերով մի տղա։

— Ես տուն եմ գնացել,— ասաց Հրայրը։

— Ես էլ եմ տուն գնացել,— վախեցած ասացի ես։

— Դուք այդ արել եք առանց իմանալու,— ներս մտնելով, բացատրեց ուսուցչուհին։— Կարծել եք, թե դասն արդեն վերջացել է։

Հրայրն ասաց.

— Այո, ես կարծեցի, թե դասն արդեն վերջացել է։

— Ես էլ կարծեցի, թե դասն արդեն վերջացել է,— կրկնեցի ես։

— Նստե՛ք,— ասաց ուսուցչուհին։

— Իսկ դասը ե՞րբ է վերջանում,— հարցրի։

— Այդ մասին ես ձեզ կհայտնեմ,— ժպտաց ուսուցչուհին:

Այդ օրը միջանցքում մի քանի անգամ աղմուկ բարձրացավ: Վերջում ուսուցչուհին հավաքեց տետրերը և մեզ ուղեկցեց մինչև դուրս:

— Հիմա ուղիղ տուն գնացեք,— ասաց,— Ցտեսություն:

— Այսպես գնանք,— ձեռքս բռնեց տղան:

— Ո՛չ,— ասացի ես:— Այնպես գնանք:

— Ջէ, այդ ճանապարհը երկար է: Այսօր այսպես գնանք:

Անցանք լայն մի փողոց, թեքվեցինք աջ, և



հայտնվեց մեր բակը:

— Դու աշխարհի ամենասիրուն մայրիկն ես,— ասաց տղան:

Բակում հանդիպեցի Անահիտին, և մենք օտար հայացքներ փոխանակեցինք:

Արևն արդեն չէր այրում: Երբեմն հինգ հարկանի շենքի կողմից քամի էր գալիս և տերևաթափում ծառերը: Պոկված տերևները դեղին գույնի էին լինում:

Ամեն առավոտ հացի կրպակի մոտ հանդիպում էինք իրար:

— Բարև,— ասում էր տղան:

— Բարև,— պատասխանում էի ես:

Մենք բռնում էինք իրար ձեռք, և Բարեկամության փողոցով վազում մինչև դպրոց: Բարձր դասարանցիները մեզ տեսնելիս ժպտում էին և իրար ինչ-որ բան ասում:

— Ինչու՞ են նրանք ժպտում,— մի օր հարցրի ես:

— Չգիտեմ,— ասաց տղան:

— Երևի նրանք գիտեն, որ մենք հայրիկ և մայրիկ ենք:

— Այո, նրանք այդ գիտեն:

— Դու վախենու՞մ ես,— հարցրի ես:

— Ես ոչ մի բանից չեմ վախենում:

Մի առավոտ էլ երբ արթնացա, սպիտակ ձյուն էր գալիս: Տաք հագնվեցի և տանից դուրս եկա: Հացի կրպակի մոտ շուրջս նայեցի: Հանեցի լեզուս և զգալով փաթիլների սառնությունը, ամբողջ ձայնով ծիծաղեցի: Դրանից հետո ձյունը իջավ թարթիչներիս վրա... Նա չէր երևում: Մի ձնագնդիկ սարքեցի և խփեցի էլեկտրասյանը: Երեք հարկանի շենքի մոտ կանգ առա: Փողոցում երկու ավտոմեքենա կար և չորս անցորդ: Ես նորից ձնագնդիկ սարքեցի և մի շնչով վազեցի մինչև դպրոց: Տղան այնտեղ էլ չկար: Ես մտածեցի, որ նա հիվանդացել է, որովհետև ձմեռը միանգամից եկավ:

Երբ մի քանի օր հետո մտա դասարան, Լևոնը նստել էր մեր նստարանին:

— Գնա այստեղից,— պայուսակս նստարանի տակ դնելով, ասացի ես:

— Ինչու՞,— հարցրեց Լևոնը:

— Սա Հրայրի տեղն է:

— Ես ուզում եմ քո կողքին նստել:

— Իսկ ես քո մոտ չեմ ուզում նստել: Ես միայն Հրայրի մոտ եմ ուզում նստել:

Լևոնն ասաց.

— Նա էլ չի գալու:

— Նա կգա, լաց եղա ես:

Դրանից հետո ոչ ոք այլևս չհամարձակվեց նստել իմ կողքին:

Ամեն առավոտ հացի կրպակի մոտ ես նայում էի շուրջս, երեք հարկանի շենքի առաջ կանգ էի առնում և նրան չտեսնելով, վազում մինչև դպրոց: Անցավ քանի օր, գուցե ավելի անցավ, որովհետև ես գիտեի հաշվել մինչև քանը, բայց նա չեկավ: Մի անգամ միջանցքում դասամիջոցին կամաց մոտեցա ուսուցչուհուն և զգուշությամբ բռնեցի նրա ձեռքը:

— Ի՞նչ ես ուզում, Լիլի՛,— հարցրեց ուսուցչուհին:

— Հրայրը ե՞րբ կգա:

— Նա այլևս չի գալու,— ուսուցչուհին շոյեց մազերս:— Նրանք տեղափոխվել են Քանաքեռ արվարձանը: Այնտեղ ուրիշ դպրոց կա:

Նա համբուրեց ինձ և ասաց, որ կիրակի օրը բոլորը պետք է կինո գնան:

Ես որոշեցի խնդրել իմ եղբայր Տիգրանին, որ տանի ինձ Քանաքեռ արվարձանը: Երբեմն մայրիկը նրան ուղարկում է հորաքույր Շուշանի մոտ, կամ էլ հացի, որովհետև նա արդեն մեծ է:

— Դու գիտե՞ս որտեղ է գտնվում Քանաքեռ արվարձանը,—երեկոյան հարցրի ես:

— Այո՛,—ասաց իմ եղբայր Տիգրանը:—Հարկավոր է գնացք նստել: Ինքնաթիռով ավելի շուտ կհասնես:

— Տար ինձ այնտեղ:

— Ժամանակ չունեմ,—ասաց իմ եղբայր Տիգրանը:

—Լիլի, խմիր թեյդ,—ասաց մայրիկը:

— Լիլի՛, պառկիր քնելու,—ավելացրեց հայրիկը:

Ես պառկեցի, բայց չկարողացա քնել: Հենց որ փոխադրվեմ երկրորդ դասարան, ինքնաթիռ կնստեմ և կգնամ Քանաքեռ արվարձանը:




ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

*Ծառերին նորից աշունն է թառել*
*Ու վառել հազար գույների քուրա.*
*Գույներն այս բոլոր արևից առել,*
*Փռել է չքնաղ մեր այգու վրա:*

*Դեղձն է հուրհրում ալ-դեղին հագած,*
*Ոսկի խաղողն է շողում թփերում,*
*Ու տանձենին է բեռան տակ կքած,*
*Մայրական սիրով գլուխն օրորում:*

*Իսկ փշատենին խարույկ է ասես,*
*Բոցի լեզվակներ ամեն մի ճյուղքին.*
*Իսկ սեխը, սեխը այնպես է հասել,*
*Որ քաղցրությունից հիմա կճաքի:*

*Եվ մանուկները ժիր ու զանգրահեր*
*Այգի են մտել վաղ արշալույսին.*
*Նրանց էլ ասես աշունն է բերել,*
*Որ ներկա լինեն այս մեծ հանդեսին:*

*Հազար գույներ է աշունը վառել*
*Ժպտում է, թռվում սաղարթի միջով.*
*Այսօր նա ուրախ ծառին է թառել,*
*Որ վաղը իջնի սեղանին մեր նոխ:*

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՏԱՐՕՐԻՆԱԿ ԱՅՑԵԼՈՒՆԵՐ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Արմենը գլխապատառ ներս ընկավ, ձեռքի պայուսակը մի կողմ շպրտեց և որքան կոկորդում ուժ կար, բղավեց քրոջ վրա։

– Ի՞նչ ես շշմածի պես կանգնել, սեղանի վրայի ավելորդ իրերը հավաքիր. շո՛ւտ...

Նրա բղավոցի վրա ներս մտավ մայրը։

— Էլի ձայնդ գլո՞ւխդ ես գցել։

— Բա ինչ անեմ, է՜։ Մինչև կոկորդս խրվել եմ գործերի մեջ, իսկ սա...

— Գործե՜ր... Քեզ թողնեն միայն մեծ-մեծ խոսես, իսկ մատդ-մատիդ կպցնելու ժամանակ չունես։ Հետաքրքիր է, ի՞նչ գործեր են լույս ընկել, որ այդպես խառնվել ես իրար։

— Դու հասկանո՞ւմ ես, մա՛մ, ես պիտի մի երգիծական ոտանավոր գրեմ։ Առանց իմ ոտանավորի մեր երգիծական պատի թերթը չի կարող լույս տեսնել։

— Այո՛, իհա՛րկե...— ժպտաց մայրը։ Բայց դա այնպիսի մի ժպիտ էր, որով ցանկանում էր ասել. «Մենք քեզ հո լավ գիտենք...»

Երբ նա դուրս գնաց, Արմենը նորից հարձակվեց քրոջ վրա։

— Ի՞նչ ես բերանդ բաց կանգնել։ Դու գիտես, որ ես ավելորդ ժամանակ չունեմ։ Քեզ ասացի՝ իսկույն մաքրիր սեղանը։ Սա ի՞նչ տուն է, ի՞նչ մարդիկ են...

Եղբոր անվերջանալի պատվերների տակ քույրը կարգի բերեց սեղանը ու դուրս գնաց։ Արմենն իսկույն պահարանից հանեց բոլորովին նոր գնված աշակերտական տետրերի դարսը և գրիչը վերցնելով, նստեց սեղանի առաջ։ Բայց արի տես, որ այդ տետրերը այնքան էլ չէին ներշնչում նրան։ Ավելի ճիշտ՝ տողերն ու լուսանցքը։ Այո՛, հատկապես այդ լուսանցքը ցրում էր ու մի տեսակ չէր թողնում կենտրոնանալ։ Ախր իսկական բանաստեղծները մաքուր թերթիկների վրա են գրում, առանց տողերի և այդ նյարդայնացնող լուսանցքի։ Դե պարզ ասած, տետրերը չափից ավելի հասարակ էին և, եթե կուզեք իմանալ, նույնիսկ անորակ։

Եվ ահա, բանը այնտեղ հասավ, որ Արմենի քիթը գնաց ու խցկվեց հայրիկի գրադարակների մեջ։ Դարակների ամբողջ պարունակությունը մանրազնին ուսումնասիրելուց հետո, վերջապես նրան հաջողվեց փայլուն և անտող... այո, հատկապես անտող թղթի մի պատկառելի կույտ գտնել։

«Ա՜յ, եթե ես կարողանայի այսպան թերթ ոտանավոր գրել, այսպես ասած, շշմեցուցիչ թեմայով և արտակարգ սրամտությամբ... Հը՞մ, անպայման համաշխարհային մարդ կդառնայի»։

Սենյակի անկյունում գտնվող բամբուկյա պատվանդանի վրա դրված էր Ապոլոնի սպիտակաթույր արձանը։ Այստեղ, ուղղակի, հրաշք կատարվեց։ Ասենք՝ ոչ թե հրաշք, այլ պարզապես Ապոլոնի արձանը տարօրինակ կերպով ծամռվեց, փոքրացավ, և ապա... Մի՛ ծիծաղեք, այստեղ ծիծաղելու բան չկա։ Ուղղակի Ապոլոնի արձանն այն աստիճան փոքրացավ, մշուշվեց, որ ի վերջո բոլորովին անհետացավ տեսադաշտից։ Նրա փոխարեն, իր ամբողջ վեհությամբ կանգնեց Արմենի արձանը՝ դափնեպսակը գլխին։ Անշուշտ երջանկությունից ու հպարտությունից նրա սիրտը կանգ կառներ, եթե հանկարծ չճռչեր դռան զանգը, որը միանգամից սթափեցրեց տղային, և պատվանդանի վրա նորից կանգնեց նա, այդ Ապոլոնը։ Արմենը իսկույն դուրս թռավ միջանցքը, տեսնելու ովքե՞ր են։

Ներս մտավ մորաքույր Սաթենիկը իր աղջկա հետ։ Դե, պարզ է, ստիպված էր հետաձգել ոտա-



նավոր գրելը։ Երբ տունը հյուրեր են գալիս, չըզբաղեցնել նրանց՝ անքաղաքավարություն է։

— Լա՛վ, վաղը կգրեմ։ Ի՞նչ մեծ բան է որ... Առավոտյան շուտ կարթնանամ ու իսկույն կգրեմ,— որոշեց նա։

* * *

Առավոտ է։ Արմենը ոտքերը դուրս է հանել վերմակի տակից ու դատարկ պարկի նման փռըվել է անկողնում՝ մի երանավետ ժպիտ դեմքին։ Գուցե մտածում է իր երգիծական ոտանավորի մասի՞ն։ Ո՛չ, բոլորովին ո՛չ, նա ամենայն բարեխըղճությամբ քնել է։ Մինչդեռ ժամացույցի սլաք-



ները ցույց են տալիս ժամը տասը։

— Ա՛յ տղա, վեր կաց է՜։ Օրը ճաշ դարձավ,— սրտնեղած ձայն տվեց մայրը։

Արմենը դժվարությամբ բաց արեց աչքերը, ծուլորեն ծռմռվեց պառկած տեղում ու քնկոտ ասաց.

— Դե լավ, է՛լի, մամ։ Թող մի քիչ քնեմ, այսօր հո կիրակի է։

— Այո՛, բայց պատին փակցված զանազան պլաններն ու ռեժիմները ո՞վ պետք է կատարի։ Դեռ խոշոր տառերով էլ գրել ես. «Ժամը 7-ին լիցքային վարժություններ»։ Փակագծերում՝ «Շըփել ու կոփել մարմինը»։ Այդպե՞ս ես կոփում, հա՞։ Անկողնում թավալ տալո՞վ։

— Ռեժիմը կիրակի օրվա համար չէ, մա՛մ, դրանք վաղը կկատարեմ։

— Ամեն ինչ «վա՜ղը», «վա՜ղը»... Իսկ, հարցնելն ամոթ չլինի, պատի թերթի համար խոստացած ոտանավորդ ե՞րբ ես գրելու։

Այստեղ Արմենը խայթվածի նման վեր թռավ անկողնուց ու քիչ հետո նա նորից իրար էր խառնըվել։ Ախր խոստացել էր ոտանավորն այսօր տա-



նել դպրոց, որ, չնայած կիրակի օրվան, խմբկոլը աշխատում էր։

— Ծո՛ւտ արեք, ես պետք է տասնհինգ րոպեից հետո գրադարանում լինեմ։ Տան աղմուկի մեջ ոչինչ չեմ կարող անել։

Փողոցով անցնելիս՝ նա դիտեց համարյա բոլոր խանութների ցուցափեղկերը, ներս ու դուրս արեց ամե՛ն մի անկյուն, որտեղ որևէ բան էր վաճառվում։ Կանգ առավ բոլոր կինո-աֆիշների առջև, թափառեց հրապարակում և երբ գրադարան հասավ՝ ժամը ժամից անցել էր։ «Եթե տանը մնայի, ոտանավորը վաղուց գրված կլիներ» - ափսոսանքով մտածեց նա ու շտապ ետ դարձավ։

— Ընկերներդ էին եկել,— ասաց մայրը։— Լսի՛ր, մինչև ե՞րբ քո ծուլության պատճառով մենք սևերես լինենք ամենքի առաջ, հը՞, մինչև ե՞րբ...

— Իսկ ի՞նչ էին ասում որ...

— Ասում էին, որ երեկոյան խոստացածդ ուղղակի Սուրիկենց տուն տանես։

— Դե տեսնում ես, մա՛մ, թե ինչ նշանակություն ունի իմ երգիծական ոտանավորը պատի թերթի համար։ Ես իսկույն...

— Լսիր, տղաս։ Ես գիտեմ, դու ընդունակ ես։ Բայց ասա տեսնեմ, ի՞նչ օգուտ քո այդ ընդունակությունից, երբ հոգուդ մեջ արդեն բույն են դրել մեծամտությունն ու ծուլությունը։

— Մեծամտությունն ու ծուլությունը՞...

— Այո, մեծամտությունն ու ծուլությունը։ Եվ եթե դու չազատվես դրանցից, քո ընդունակությունը կամաց-կամաց կկորչի։

— Դե որ այդպես է, իսկույն կնստեմ ու մինչև չգրեմ տնայնավորը, չեմ վեր կենա։ Մենակ թե հայրիկը թույլ տար իր աշխատասենյակում պարապել։ Մի՛ վախեցիր, ինչի ձեռք չեմ տա։

— Դե լավ, միայն տես, որ կողմնակի բաներով չզբաղվես։

Հարկավոր էր տեսնել, թե մայրն ու քույրը ինչպիսի՜ զգուշությամբ էին շարժվում տանը, ուղղակի ոտքի ծայրերի վրա։ Նույնիսկ հայրիկը, որ մինչ այդ պատշգամբում վերանորոգում էր աթոռի պոկված ոտը, թողեց գործն ու իսկույն դուրս գնաց տնից, որպեսզի ամենափոքրիկ թխկոցն անգամ չխանգարի տղային։

Իսկ Արմենը հոր գրասեղանի առջև նստած, հայացքը հառած առաստաղին, մտածում էր։ Նա արդեն հասցրել էր խզբզել գրադարակից հանված համարյա բոլոր թղթերի վրա, բայց առայժմ արդյունքը եղել էր երկու տող։

«Ցից-ցից մազերով այս տղան,
Աչքերը կանաչ, լուսաճաճանչ...»

Իսկ շարունակությունը՞... Շարունակությունը եղավ այն, որ քանի անգամ գրչածայրը չրխկաց թանաքամանի մեջ։ Քանի անգամ թանաքը չորացավ գրչածայրին, բայց արդյունքը մնաց նույնը։

«Չէ՛, այսպես բան դուրս չի գա։ Հարկավոր է հավաքել մտքերը ինչպես հարկն է։ Գուցե մի փոքր պառկեմ բազմոցի՞ն։ Այդպես ավելի հեշտ է մտածելը»։ Արմենը մի կողմ դրեց գրիչն ու վեր կացավ։ Նա երկար ու մեկ փռվեց բազմոցի վրա և աչքերը սևեռած մի կետի, սկսեց հավաքել մտքերը։ Բայց այդ անիծյալ մտքերը ոչ մի կերպ չէին ուզում հավաքվել։ Դրա փոխարեն նրա ականջներում հնչեցին մոր քիչ առաջ ասած խոսքերը. «...Ես գիտեմ, դու ընդունակ ես։ Բայց ասա տեսնեմ, ի՞նչ օգուտ քո այդ ընդունակությունից, երբ հոգուդ մեջ արդեն բույն են դրել ծուլությո՞ւնն ու մեծամտությունը»։

«Ճիշտ չի՛, ճիշտ չի՛...» — կրկնեց նա իր մտքում և սթափվելով, որոշեց մտածել միայն իր տնայնավորի մասին։ Ի վերջո, նա դրանից էլ ձանձրացավ, բերանը լայն բացած մի քանի անգամ հորանջեց և...

Վա՜յ, այս ի՞նչ էր։ Ասես մեկը բազմոցի տակից սկսեց հրմշտել ներքնակը և այն էլ այնպես ուժեղ, որ քիչ մնաց ցած գցեր նրան։



Հանկարծ սենյակի կիսախավար անկյունում հայտնվեցին երեք տարօրինակ արարածներ։ Առաջինը հաստլիկ, փքված մարմնով մի կին էր։ Նա ոսկեզօծված մի հսկա հովհար էր բռնել ձեռքին։ Երկրորդը չոր դեմքով, հիմարավուն հայացքով, բարձրահասակ տղամարդ էր։ Նրա մինչև առաստաղին հասած գլուխը, բարակիկ մորուքով վերցված կզակն ու գոռոզ հայացքը, իսկույն ենթադրել էր տալիս մարդու, որ դիմացը կանգնած է մի բարձրաստիճան պատարկություն։ Իսկ երրորդը խելացի ու իմաստուն հայացքով երիտասարդ էր, համեստ և կոկիկ հագնված։

Հնդուհավի նման փքված տիկինը ծանրորեն մոտեցավ բազմոցին և իր քնքուշ հովհարը դանդաղ թափահարելով Արմենի դեմքին, ծուլորեն հորանջեց ու ասաց.

— Ա՜հ... Հանգստացիր, քնքուշի՛կ տղա։ Հանգստությունը ամենակարևոր բանն է աշխարհիս երեսին։

Ո՞վ եք դուք,— զարմանքից արձանացած հարցրեց Արմենը։

— Դա դժվար չէ գուշակել, ի՛մ փափկասուն։

Ես տիկին Ծուլությունն եմ։

Իսկ որտեղի՞ց եկար դու։

— Այստեղից, քո միջից...

— Ոչինչ չեմ հասկանում, ինչպե՞ս թե իմ միջից։

— Իհա՛րկե, ես ապրում եմ քո մեջ, շարունակ շրջում եմ քեզ հետ, և մի՞թե այսքան ժամանակ ինձ չես նկատել։

— Չե՛մ նկատել...

— Ուրեմն՝ անչափ հոգնած ես եղել։ Այժմ հանգստացի՛ր, հանգստացի՛ր։

— Բայց ախր ինչպե՞ս կարող եմ հանգստանալ։ Ինձ հարկավոր է ոտանավոր գրել մեր դպրոցի երգիծական պատի թերթի համար։ Խոստացել եմ։ Դա շատ կարևոր է, հասկանո՞ւմ եք։

— Ինձ այդքան մի հոգնեցնի, տղա՛,— հորանջելով ասաց տիկին Ծուլությունը։— Տեսնում ես, ձեռքս հոգնեց այս ահավոր ծանր հովհարից։ Թեպետ խոսելն էլ հոգնեցնում է ինձ, բայց ստիպված եմ բացատրել, որ դու հասկանաս, թե ինչ դժվար բան է աշխատանքը։

Հանկարծ այստեղ այն երրորդը, որ կանգնած էր անկյունում, առաջ եկավ և զայրույթից խեղդված ձայնով ասաց.

— Ինչպե՞ս չեք ամաչում, տիկին Ծուլություն։ Այն օրվանից ինչ դուք տեղ գտաք այս տղայի մեջ, ես նրա աչքում կորցրեցի իմ դիրքն ու հեղինակությունը։

— Իսկ, հետաքրքիր է, ո՞վ եք դուք,— դժվարությամբ տեղավորվելով բազկաթոռին, հարցրեց Ծուլությունը։

— Ես ընդունակությունն եմ։ Ապրում եմ տղայի մեջ, որ նրան է՛լ ավելի գեղեցիկ ու շնորհալի դարձնեմ։ Բայց դուք, ձեր ճարպոտ ուղեղով թունավորում եք այս անմեղ արարածի ապագան։

— Ինչպե՜ս եմ ձանձրույթից սկսում հորանջել, երբ ինձ հանդիպում են այնպիսի չնչին արարածներ, որոնք իրենց ընդունակություն են անվանում,— պատասխանեց տիկին Ծուլությունն ու դարձավ Արմենին։— Երդվում եմ մեր յոթ կրիաների սուրբ աստվածությամբ և նրանց կարծր պատյանով, չհավատաս սրան, իմ կրիաշարժ տղա։

— Բայց հասկացե՛ք...— Ցանկացավ խոսել Ընդունակությունը։

— Հասկանալ, դա նշանակում է նույնպես հոգնել,— ընդհատեց նրան Ծուլությունը, ընկղմվելով բազկաթոռի մեջ։

— Այո, բայց իմացեք, որ այս տղան վաղ թե ուշ կհրաժարվի ձեզանից։ Քանի ես կամ նրա մեջ, իմ կողքին չպետք է լինի, ձերդ Ծուլությունը։

— Վիճել ձեզ հետ, նշանակում է քայքայել հանգստությունը։ Ես արհամարհում եմ ձեզ, Ընդունակություն։ Բայց դուք էլ իմացեք, որ այս բամբակամման տղան միայն ու միայն ինձ է




պատկանում։ Թույլ տուր նստել քո կողքին, իմ կոնֆետահամ տղա։

— Խնդրե՛մ, նստեցեք, տիկին Ծուլություն,— ասաց Արմենն ու մի կողմ քաշվելով, տեղ տվեց նրան։

Ծուլությունը տնքալով մի կերպ քարշ տվեց իր ուռած մարմինը, կրիաքայլ մոտեցավ ու միանգամից փլվեց բազմոցի վրա։

— Օ՜ֆ... ի՜նչ սոսկալի դժվար էր այս երկար ճանապարհը։

Եվ հենց այդ պահին պայթեց սենյակի մեջտեղում ցցված այն երկրորդ արարածի խռպոտ ձայնը, որի զոռոզաբար վեր խոյացած գլուխը մինչև առաստաղն էր հասնում։

— Քիչ է մնում պայթեմ այս նվաստացնող համբերությունից, որը պատիվ չի բերում իմ վսեմաշուք անվանը։

— Դուք ո՞վ եք, ես չեմ ճանաչում ձեզ,— հարցրեց Ընդունակությունը։

— Այդ դո՛ւք ասացեք ովքեր եք, որ երկուսով փորձում եք տեր ու տիրակալություն անել այս հանճարեղ տղայի գլխին։

— Մի՞թե չէք ճանաչում ինձ, պարոն Մեծամտություն։ Չէ՞ որ մենք հին ծանոթներ ենք,— հորանջելով հարցրեց Ծուլությունը։

— Այո, կարծես ինչ-որ տեղ ձեզ հանդիպած պետք է լինեմ։ Իսկ այս հասարակ, իմ պայծառության ոչ մի պատիվ չբերող արարածն ո՞վ է։

— Ճիշտ է, մենք բոլորս իրար հետ ապրում ենք այս տղայի մեջ, բայց խորթ ենք իրար։ Ես չեմ ուզում ճանաչել ձեզ,— ասաց Ընդունակությունը։

— Ինչպե՞ս եք համարձակվում չճանաչել ինձ, չնչի՛ն արարած։ Ես դարեր շարունակ զարդարել եմ մարդկանց ճակատները։

— Այո, դուք «զարդարել եք», բայց միայն նրանց»— հեգնանքով լրացրեց Ընդունակությունը,— որոնց գրնգացող գանգի մեջ ուղեղ չի եղել։

— Իսկույն դուրս կորե՛ք այստեղից և մեկ-ընդմիշտ իմացեք, որ այս հանճարեղ փոքրիկը ինձ է պատկանում։

— Եվ ինձ, ա-ա՜հ...

— Մի՛ վիճեք, խնդրում եմ,— աղերսագին ձայնով միջամտեց Արմենը,— դուք բոլորդ էլ հարազատ եք ինձ։




— Միայն ես եմ քո հարազատը, իմ ծույլ տղա։ Դու մոռանում ես, որ ես իմ քնաբեր հովհարով թմրեցրել եմ հոգնած ուղեղդ, որ այս չնչին Ընդունակությունը չչարչարի քեզ։ Ա-ա՜հ...

— Ոչ, քո միակ հարազատը ես եմ,— խրոխտաբար բացականչեց Մեծամտությունը։— Այդ ես եմ բոլորի մոտ միշտ բարձր պահել քո ապոլոնյան հանճարեղ գլուխը, որ դու...

Մեծամտությունը դեռ նոր էր սկսել իր ամպագորգոռ ճառը, երբ հանկարծ բամբուկյա պատվանդանի վրա դրված Ապոլոնի գիպսե արձանը բարկությունից ցնցվեց տեղում, մի քանի անգամ գայթայթեց հազաց և ապա դանդաղ ցած իջավ։ Հզոր Ապոլոնը ծանրաքայլ եկավ, կանգնեց Արմենի առաջ։

— Դո՛ւ, տղա՛, հավանաբար ինձ ճանաչել ես դեռևս երկու տարի սրանից առաջ՝ Հին աշխարհի պատմության դասագրքից։ Դու, անշուշտ, գիտես, որ ես՝ Ապոլոնս, Զևսի որդին, իմաստություն տվեցի մարդկանց և բանաստեղծական քնար։

— Աա՛... այո՛, իհարկե,— շշնջաց Արմենը։

— Այո, բայց բանաստեղծներին քնար տալուց բացի, ես լուսավորեցի ըմբոստ Պրոմեթևոսի միտքը, որ աստվածներից նա խլի լույսը ու տա խավարում խարխափող մարդկանց։ Հանճարների գլուխները պսակեցի սրբազան դափնու տերևներով և տվեցի նրանց համեստություն, աշխատասիրություն, խոհեմություն։ Պրոմեթևոսյան կրակը լուսավորեց միտքը մարդու։ Մարդը հիմա հրաշքներ է կատարում։ Այնպիսի հրաշքներ, որ մենք աստվածներս անգամ չէինք կարող երազել։ Մարդը պատռեց տիեզերքը, հասավ Ուրանոսի գահին։ Սուզվեց Պոսեյդոնի ջրերի անհատակ թագավորությունը։ Իսկ այժմ էլ ծառս է եղել հզոր Մարսի դեմ և ուզում է ոչնչացնել սուրը պատերազմների, որ աշխարհի վրա թագավորի երգն ու բանաստեղծությունը։ Իսկ դո՛ւ, տղա՛, ապրելով այդ հրաշքների դարում, ման ես գալիս ձեռքերդ ծալած, քիթդ վեր ցցած, փայփայելով քո մեջ այդ ողորմելի ծուլությունն ու մեծամտությունը...

Այդ խոսքերից հետո, Ապոլոնը մոտեցավ և իր գիպսե մատներով, տհաճությամբ բռնեց անկյունում կուչ եկած երկու ճիվաղների ականջներից ու այնպիսի դղրդյունով դուրս շպրտեց նրանց, որ Արմենը ցնցված վեր թռավ։

Սենյակում ոչ ոք չկար։ Գրասեղանի վրա թափթփված էին խզբզած թղթերը։ Իսկ Ապոլոնն էլ նույն տեղումն էր։ Նա իր պատվանդանից, գիպսե սառը հայացքով նայում էր անորոշ մի ուղղությամբ։ Միայն բազմոցի թիկնակն էր ընկել հատակին, որի աղմուկից էլ երևի վեր էր թռել Արմենը։

# ՍԵԴԱՆ ՈՒ ՍԱՌՆԱՐԱՆԸ

*ՄԵՏԱՔՍ*

Տանը Սեդան է ու փիսոն ճերմակ,
Որ շատ է սիրում խաղեր ու կատակ։
Սեդան շատ ասաց, թե խելոք մնա,
Բայց փիսոն պատռեց զգեստը նրա։
Ի՞նչ աներ Սեդան... լաց եղավ տխուր,
Ծուռ տվեց, թափեց կաթ ու կերակուր.
Ուզեց փիսոյին կանգնեցնել անկյուն,
Բայց փիսոն նրան լավ չէր հասկանում.
Անկյունում մի պահ կանգնում էր շվար,
Հետո քայլում էր՝ պոչը վեր ու վար...
Սեդան ի՞նչ աներ, նայում էր մոլոր,
Երբ հանկարծ գլխում մի միտք ծագեց նոր,
Քաշեց հազիվ-հազ բացեց դուռը մեծ,
Սառնարանի մեջ փիսոյին դրեց։
— Դե գնա նստի՛ր, չես ուզում կանգնել,
Պատժվելու ես մի ժամից ավել...—
Նստած դիվանին նա խաղ էր անում,
Երբ կատուն նվաց ցուրտ սառնարանում։
Սեդան շփոթվեց, վեր թռավ հանկարծ,
Խաղալիքները դիվանին թողած,
Վազ տվեց իսկույն, իր լավ փիսիկին
Ցուրտ սառնարանից դուրս հանեց կրկին։
Տեսավ սառել է մարմինը ամբողջ,
Դողում են գրտից թաթիկներ ու պոչ։
Գրկեց փիսոյին, լաց եղավ Սեդան,
Որոշեց երբեք չանել նման բան։

# ՀԱՅԱՍՏԱՆԻՆ

Դու ծաղկած վարդ ես՝
Պարտեզում բացվող.
Ես էլ քո թերթին
Իջած գարնան ցող։

Դու շինարար ես
Բարձունքներ կերտող.
Ես էլ մի քարտաշ՝
Քարերդ հղկող։

Դու՝ ճանապարհորդ
Բազում դարերի.
Ես՝ մի վայրկյանը
Քո վառ օրերի։

*ԶԵՆԵՐԱ ԽՈՍՅԱՆ*
*(Վրացական ՍՍՀ, Սուխումի միջնակարգ դպրոց)*

Լիճն առաջ Նորադուզի տակ էր, իսկ հիմա հեռացել է նրանից վեց կիլոմետր։ Հատակից դուրս ելած լերկ ու ամայի տարածության վրա, հիմա ջահել անտառներն են սոսափում։ Խորքում դրանք արդեն ջահել ծառեր են, իսկ լճափնյա ավազները ծածկված են նոր տնկած մատղաշ շիվերով ու նոսր կանաչով։ Ահա այդ կանաչ գոտում մեր «ձկնորսական բազան» ենք հիմնել՝ ես, իմ ընկեր Ռենիկը և իմ տասնմեկ տարեկան որդին՝ Լևոնիկը։ Մինչև երեկո կարթերով ձուկ ենք որսում լճից, երեկոյան խարույկ ենք վառում, մեր որսը խորովում և հենց այդտեղ էլ գիշերում բացօթյա՝ Սևանի շունչը մեր դեմքին, նրա կախարդական երկինքը մեր վերևում...

Մեր ձկնորսության ընթացքում պատահում են մեզ ուշադրության արժանի դեպքեր, որոնցից մեկն ուզում եմ հիմա պատմել։

Մի անգամ կեսօրին, երբ արևը շատ նեղեց, մենք ափ դուրս եկանք ու մեկնվեցինք մեր ավտոմեքենայի շվաքում։ Լիճը կանգնած էր վիթխարի հայելու նման և անդրադարձնում էր հունիսի բարկ արևի ճառագայթները։ Սպասում էինք երեկոյան հովին, որ նորից ջուրը մտնենք մեր ռեզինե փչովի նավակով։ Բայց իմ անհամբեր ընկեր Ռենիկը, որ ինձնից շատ երիտասարդ է, նավակը ջուրը հրեց և նորից լիճը մտավ։

— Ա՜յ տղա, ախր խաղաղ ժամանակ ձուկ բռնել չի լինի, ու՞ր ես ծովը մտնում,— նախատեցի ես։

— Է՜հ, ձուկ էլ չլինի, հո՞ նավակի վրա արևի վաննա կընդունեմ...

Ու թիավարեց դեպի խորքը։

Տղաս գլուխը բազուկներին դրած քնեց, իսկ ես նայում էի ջրերի վրա թրթռացող որորներին ու լսում նրանց խուճապահար ճիչը։

Մի անգամ հեռվում աչքովս ընկավ մեր նավակը, որ սուրում էր դես ու դեն։ Ի՞նչ բանի է այդ տղան, ախր խոստացավ արևի վաննա ընդունել։

Գաղտնիքը պարզվեց, երբ քիչ անց Ռենիկը ափ ելավ և իր փեշի տակից հանեց ու առաջս դրեց կարմիր բադի մի թաց ճուտ։

— Ո՞նց բռնեցիր,— հետաքրքրվեցի ես։

— Նավակով։ Քշեցի խմբի վրա, ութ հատ էին՝ մայրն ու յոթ ճուտը։ Ո՜նց էր ճչում մայրը, կարգադրում էր սուզվել ջրի մեջ... Վերջը, մի կերպ հաջողեցրի սրան բռնել... Մի տե՛ս, ի՜նչ լավն է, խեղճի փետուրները այնքան չեն աճել, որ կարողանա թռչել...

Ճիշտ եմ ասում, բայց մի վառեկի չափ բան էր, ծածկված աղվամազով և նոր բուսած նոսր փետուրներով, այնքան նոսր, որ նրանց արանքներից երևում էր նրա մերկ մարմինը։

— Վա՜յ, էս ինչ լավի՜կն է,— արթնանալուն պես ճչաց տղաս ու գիրկն առավ վախից դողացող



# ՈՐԲ ԲԱԴԻԿԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

թռչունին: — Ես սրան կտանեմ մեր տուն... Ինչու՞ տուն, դպրոց կտանեմ՝ մեր բնագիտական կաբինետի կենդանի անկյունը... ինչ լավի՜կն է... հաց տամ կուտի՞...

Երեխան զբաղված էր թռչունով, որն արդեն իրենն էր համարում, իսկ մենք քչփչոցով խորհրդակցում էինք, թե ինչպես առնենք նրա ձեռքից և ազատություն տանք թռչնիկին։ Ռենիկն արդեն զղջում էր իր անգութ արարքի համար ու միջոց էր մտածում ճագին մորը վերադարձնելու համար։

Փորձեցինք համոզել Լևոնիկին, չհաջողվեց։ Դիմեցինք խորամանկության։

— Դե բա՛ց թող, որ արածի, ախր մեղք է, նեղվում է գրկիդ մեջ։

Անդրդվելի մնաց։

— Բա որ փախչի, ջուրը մտնի՞...

— Հեռացնենք ջրից, տանենք անտառ։

Տատանվելով համաձայնվեց ու երեքով սկսեցինք հեռանալ լճից։

Քանի խորանում էինք անտառաշերտի մեջ, այնքան շիվերը բարձրանում էին։ Վերջապես նրանք, որ տնկված էին տարիներ առաջ, դարձան մեր հասակին։

— Ա՛յ, այստեղ բաց թողնենք, թող արածի,— ինձ գաղտնի աչքով անելով, դիմեց Ռենիկը Լևոնիկին։ Իր խելքով իբր թե խորամանկում է։ «Չէ՛, բան չի դուրս գա, — մտածում էի ես, — այս բարձր մոլախոտերի, ծառաստանի միջից այս խեղճ ու կրակ արարածը ինչպե՞ս պիտի գտնի ջրի ճամփան, որ փրկի իր կյանքը...»

Այդ մտքին էի ու ընկերոջս արածը միամիտ բան էի համարում, երբ Ռենիկը բադիկին բաց թողեց երեսով դեպի Նորադուզ։ Լիճը նրա հակառակ կողմը մնաց։ Բայց այստեղ մի անսպասելի բան կատարվեց։ Թռչունը անմիջապես, առանց տատանվելու շուռ եկավ ու բարձր մոլախոտերի միջով սկսեց վազել դեպի լիճը... Այնպես վստահ էր գնում այդ անփորձ արարածը դեպի իր նպատակակետը, կարծես մի բլուրի կանգնած՝ պարզ տեսնում էր, թե որտեղ է փրկարար ջուրը...

Տղաս վազեց հետևից, որ բռնի՝ չհաջողվեց։ Մի անգամ ձեռքը գցեց պոչին, բայց ոտքը շիվին խճճվեց՝ բերանի վրա փռվեց։ Ապա արագ վեր թռավ ու խուճապահար առաջ վազեց։ Մենք ծիծաղից փորներս բռնել ենք, իսկ նա լացակումած, երեսը չանգռված, վազում է տագնապով։ Երբեմն կտրում է թռչունի ճամփան ու ձեռքը մեկնում, որ բռնի, բայց չի կարողանում թափը պահել ու գլուխկոնծի է տալիս։ Ձեռքերը փշերի ու եղինջի բերանը տալով՝ դես վազեց, դեն վազեց, չկարողացավ բռնել. բադիկը ուղիղ գծով անցավ դեպի ափ և ջրին հասնելուն պես՝ նետվեց նրա մեջ։

Տղաս մի վայրկյան կանգ առավ ափին, ապա վճռական շարժումով ուժ առավ, մեր ահագին նավակը հրեց ջրի մեջ, ցատկեց վրան ու թիակները ձեռքն առավ, ո՜նց է տաքացած թիավարում... Հասավ, ձեռքը խոթեց ջրի մեջ, որ բռնի՝ բադիկը սուզվեց։ Տղան մնաց մոլորված։

— Եկեք է՜, ինչի՞ եք ծիծաղում, — խռոված ու լացակումած գոչեց նա մեզ և բադիկին մի այլ կողմում նկատելով, նավակը քշեց նրա վրա։

Երկար չտևեց մրցությունը մի տասնմեկամյա տղայի և հազիվ մեկ ամսական այն արարածի միջև. սուզվելով և դես - դեն «խափս տալով», նա շատ շուտ հոգնեցրեց ու հուսահատեցրեց տղային։ Քիչ անց հեռվում, մանր ալյակների մեջ հազիվ

երևում էր տարուբերվող նրա գլխիկը։

Իսկ տղաս ափ էր դուրս եկել ու արցունքն աչքերին՝ հաշիվ էր պահանջում մեզնից.

— Ինչի՞ բաց թողեցիք, հը՞...

— Ա՛յ բալա, ու՞մ մտքով կանցներ, թե նրա մայրը դեռ ձվի մեջ եղած ժամանակ նրան սովորեցրել է ծովի ճամփան, — պատճառաբանեցի ես։

Եվ իրոք, մենք զարմացած էինք, թե այդ կենդանին ինչպե՞ս իմացավ որտեղ է լիճը, երբ իր կանգնած տեղից միայն երկնքի մի կտորն էր երևում... Ջրի ձայնի՞ց։ Բայց լիճն այն ժամանակ քարացած էր կեսօրի թեժ արևի տակ։ Քամու՞ց։ Քամի չկար, օդը կանգնած էր։ Մնում է կարծել, որ փրկության ճամփան նա գտավ ջրի, մամուռի, լճի յուրահատուկ հոտով, որ ծանոթ է, հասանելի ու հարազատ միայն ջրային թռչուններին։ Ինչպես և անսխալ գործող այն բնազդով, որ ժառանգել էր այդ փոքրիկ արարածը իր նախնիներից՝ բադերի բազմաթիվ սերունդներից։

Մենք՝ հասակավորներս, ուրախ ենք, որ, վերջապես, այն անմեղ արարածը նորից ազատություն ստացավ։ Հոգով թեթև ենք, և այդ թեթևությունն անցավ նաև մեր Լևոնիկին, ու քիչ անց նա նույնիսկ ուրախ ծափ զարկեց։

— Այդ հո լա՛վ եղավ, կգնա կգտնի իր մայրիկին...

Բայց կգտնի՞ արդյոք։ Լճի վրա պտտվող ցինը չի՞ ճանկի նրան։ Ասենք՝ սուզվեց ու ազատեց իր կյանքը, բայց կերակրվելու համար ափ պիտի դուրս գա, թե ոչ։ Ինչպե՞ս է կեր ճարելու, ո՞վ է նրան զգուշացնելու մոտեցող վտանգի մասին։ Թևեր չունի, ինչպե՞ս է գլուխն ազատելու. ախր ափ նետվող սատկած ձկներ գտնելու համար լճի ափերին գիշատիչներ են վխտում և նրանց մեջ՝ ամենից նենգը՝ աղվեսը։ Զոհ չի՞ գնա նրանցից մեկն ու մեկին։

Ահա այս մտքերն էին ծագել իմ մեջ, ուստի, կարծես ինքս ինձ, ասացի.

— Իզուր բաց թողեցինք, կարելի էր տանը պահել։

Քիչ անց մենք նորից ձուկ էինք որսում, մեր կարթերը այնպես էին քաշքշում իշխանները, որ մոռացանք այդ դեպքն էլ, բադիկին էլ, մեզ հուզողն այժմ այլ բան էր՝ քսան մետր խորության մեջ բռնված այս ձուկը արդյոք ի՞նչ մեծության է, կպոկվի կփախչի՞, թե կհանեմ ու կնետեմ նավակի մեջ։

2

Վերադարձանք Երևան և մի շաբաթ հանգստանալուց հետո նորից ձկնորսության գնացինք մեր սիրած վայրերը։ Այն բադիկի մասին իրար ոչինչ չէինք ասում, բայց ինձ թվում է երեքիս մտքում էլ նույն հարցն էր. «Հետաքրքիր է, ապրու՞մ է, թե՞ զոհ գնաց...»

Երբ մոտեցանք մեր «ձկնորսական բազային», որորների մի խումբ թռավ այնտեղից, իսկ նրանց ձագերը վազեցին դեպի լիճը։ Տեղ հասանք և տեսանք, որ որորները՝ ափերն աղտոտությունից մաքրող այդ հիանալի սանիտարները մեր բազայի շրջակայքը լավ մաքրել են մեր թողած սննդի մնացորդներից և որսած ձկների փորոտիքներից։ Դես-դեն նայեցինք՝ կարմիր բադիկը չկար։

Մտանք լիճը. առաջ գնացինք և կախեցինք մեր կարթերը։

Լուռ էինք։ Լուռ ու մտախոհ էր, մանավանդ, մեր մշտուրախ Ռենիկը. երևի խիղճը տանջում էր, թե ինչ՞ու պատճառ դարձավ մի անմեղ արարածի կորստյան։

Քամին մեր նավակը դեպի ափ էր հրում և մենք ստիպված էինք լինում նորից թիավարել դեպի լճի խորքը։

Մի անգամ էլ, երբ բավական մոտեցել էինք ափին, տղաս մատը մեկնեց դեպի ավազներն ու հարցրեց.

— Էն ի՞նչ թռչուն է...

Իրոք, մի թռչուն փորը հպել էր ավազներին ու սսկվել։ Նրան շվաք էր անում մի ցանցառ մոլախոտ։

— Բադ է, պիտի խփեմ խորովենք, — ասաց



Ռենիկը՝ նավակի մեջ միշտ անգործ ընկած հրացանը վերցնելով։

Քամին մեզ մոտեցնում էր ափին և քանի մոտենում էինք, այնքան թռչունը հպվում էր ավազներին։ Նա անշարժ քարի էր վերածվել, և եթե որսորդի փորձված աչք չունենայինք, պիտի կարծեինք, որ իրոք քար է։

Երբ շատ մոտեցանք, և թռչունը զգաց, որ նկատվել է, վեր ցատկեց ու վազեց-անհետացավ խոտերի մեջ։

— Ջա՜ն, բադիկն է, — բերկրանքից ճչաց տղաս։

—Տեսա՞ք, որ կարմիր էր...

Իրոք, փախչողը կարմիր բադի ճուտ էր։

Ափ դուրս եկանք, երեխաս վազեց դեպի այն խոտերը, ուր չքացավ բադիկը։ Դես փնտրեց, դեն փնտրեց, հանկարծ նրա ոտքերի տակից բոցանման կարմիր մի բան թռավ, ընկավ լիճն ու զոռ տվեց թաղանթավոր ոտքին։

— Թռչու՜մ է, ջա՜ն, արդեն թռչու՜մ է, - ծափ էր տալիս Լևոնիկը ափին կանգնած։

Բարձր տրամադրությամբ մենք ճաշեցինք և ես նկատեցի, որ տղաս ուտելիք է շաղ տալիս շրջակայքում։

-- Բադիկիս բաժինն է — բացատրություն տվեց նա:

— Որորները կուտեն, իզուր է... Նա այլևս այստեղ չի գա, — համոզում էի ես։

Բայց ես սխալվեցի. երեկոյան դեմ, երբ նավակով դեպի ափ էինք լողում, նկատեցինք, որ մի թռչուն մեր մեքենայի մոտից վազեց մտավ խոտերի մեջ։ •

— Բադի՜կս, բադի՜կս...—ճչում էր երեխաս ծափ զարկելով։

Ափ իջանք. իրոք բադիկը մաքրել էր մեր սեղանի մնացորդները։

Երեք օր մնացինք մեր «կայանում» և ամեն օր հեռվից տեսնում էինք, թե ինչպես մի կարմիր բադիկ մեն-մենակ պտտվում է մեր մեքենայի շուրջը և հավաքում մեր թողած փշրանքները։

Երբ մեկնում էինք Երևան, տղաս ըմբոստացավ։

— Բա որ մենք գնանք, ո՞վ է կերակրելու, ո՞վ է պաշտպանելու բադիկիս...

— Լա՜վ, ի՞նչ ես առաջարկում, — բարկացա ես։

— Մնանք, մինչև որ մեծանա...—լրջորեն առաջարկեց Լևոնիկը։

Դժվարությամբ համոզեցինք, որ ետ կանգնի իր այդ մտքից։ Այն ժամանակ նա մեր ճամփի պաշարը փռեց լճափին, իր այդ արարքով մի փոքր հանգըստացավ ու նոր միայն մեքենա նստեց։

3

Հաջորդ անգամ, երբ մոտենում էինք ափին, մեր «կայանից» մի կարմիր բադ թռավ - սուրաց ալիքների վրայով և վայրէջք կատարեց ափից բավական հեռու։

Իջանք մեքենայից ու երեքով նայում ենք մեր սանիկին, ու բոլորիս գլխում էլ նույն ուրախ միտքն է. «Մեծացավ... փրկվեց...»

Նախաճաշեցինք ափին, իսկ նա հեռվից նայում է մեզ գայթակղված, սպասում է մեր հեռանալուն, որ որսի դուրս գա։ Հեռացանք և արագ հեռացանք. այս անգամ մոտոր էինք դրել մեր նավակին։

— Քշիր դեպի Քիթը, — պատվիրեցի ղեկի մոտ նստած տղայիս։«Քիթը» Նորադուզի հրվանդանն է, որի վրա մի մամռոտ ջրափոս կա, ուր իրենց ձագերի հետ կերակրվելու են գալիս կարմիր բադերը։ Շրջանցեցինք այդ հրվանդանը և նրա հակառակ կողմից ափ դուրս եկանք: Ափի մամռոտ ջրերից մի խումբ կարմիր բադեր օդ բարձրացան՝ մեկը խոշոր, վեցը՝ փոքր... Մենք ուրախ իրար երես նայեցինք։ Խրտնած մեր ներկայությունից, թռչունները թևածեցին դեպի հակառակ կողմը՝ դեպի մեր մեքենան։ Ու տեղի ունեցավ այն, ինչ փափագում էինք մենք ամբողջ սրտով. մեր մեքենայի մոտից մի թռչուն պոկ եկավ, դժվարությամբ օդ բարձրացավ և շտապեց երամի հետևից։ Շարժում էր իր թույլ թևերը, ճչում փրկություն կանչողի նման, կարծես ասում էր իր թռչնային լեզվով.

— Սպասեցե՜ք, ի՜նձ էլ տարեք, ախր ես ձեր եղբա՜յրն եմ...

Եվ տեղ հասան նրա աղիողորմ ճիչերը. մայրը ջուր եկավ, ճտերն էլ հետևից: Նրանք պտույտներ գործեցին օդում, և մենք տեսանք, թե ինչպես երամն իր մեջ առավ մենավոր բադիկին ու գնաց իջավ Սևանի փրփուրների մեջ:

— Գտավ իր մայրիկին, ջա՜ն... ձեռքը ճակատին հով արած՝ քրթմնջում էր իմ որդին։

Մենք երջանիկ էինք այդ փոքրիկ դիպվածով։ Եվ ինձ թվում էր այդ օրը Սևանն ավելի հմայիչ էր, մոր նման մեղմ ու բարի։



## ՀՈՂԻՑ ՎԱԽԵՑՈՂ «ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԸ»

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ





Բահը ուսին, գարնան մի օր,
Հագած շորեր այգեպանի,
Բանջարանոց մտավ Կարոն,
Որ հող փորի, բոստան ցանի:
Հասավ նա տեղ ու նույն պահին
Մի թզաչափ հողը փորեց,
Հետո տխուր հենվեց բահին
Եվ մտախոհ՝ վիզը քորեց:
— Ջորացել է,—ասաց,—հողը,
Տեղ չի տալիս իմ սուր բահին,
Կփափկացնի սրա կողը
Եղանակը անձրևային...
Օրեր եկան, օրեր անցան,
Անձրև տեղաց վարար ու հորդ,
Նորից հողին չմոտեցավ
Տղան անբան ու ալարկոտ:
Ասաց.— Թաց է, թե որ փորեմ,
Ցեխ կդառնամ ամբողջովին.
Դեռ առջևում շատ կան օրեր,
Դեռ կհանձնեմ սերմը հողին...
Օրերն անցան ու գնացին,
Դաշտը շորեր հագավ դեղին,
Ու չտվեց անգամ մի ծիլ
Հողն իրենից վախեցողին:



## ՔՈԹՈԹՆԵՐԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Փափլիկ, Բրդոտ երկու քոթոթ
Խաղում էին ծեր կաղնու մոտ:

Կատվին հանկարծ նրանք տեսան
Ու միասին վրա հասան:

Մեկը առաջ ընկավ մի քիչ,
Մյուսը բռնեց նրա ոտքից:

Ու գզվեցին, կռիվ արին,
Գլորվեցին, դիպան ծառին:

Երբ վեր կացան, չկար կատուն,
Տխուր-տրտում ետ դարձան տուն:

Իսկ փիսիկը հեռվում խաղում,
Նայում էր ու լուռ ծիծաղում:

## «ԱՄԵՆԱԳԵՏԸ»

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Իմ դասընկեր փոքրիկ Վանին
Ուզեց հասնել ամեն բանի.
Ասաց. «Վարպետ կուզեմ լինել,
«Կազ» մեքենան բանեցնել, շինել:
Ցանկություններ ունեմ բազում,
Բժիշկ դառնալ եմ երազում.
Կուզեմ լինել ես նկարիչ,
Գործարանում՝ ցեխի վարիչ,
Որ ինձ ասեն՝ հերոս Վանի,
Ամենագետ, քեզ երանի՜...
Ու խմբակ էր որտեղ գործում,
Վանին այնտեղ ուժն էր փորձում:
Երազներով տարվեց այնքան,
Որ մոռացավ դասերն անգամ...
Ու այդպես էլ փոքրիկ Վանին
Դեռ չի հասել ոչ մի բանի:



## ՄՈՐԹԸԳԱՂՑԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Կաղամբորդը
Փոխեց մորթին
Եվ հյուր եկավ
Շերամորդին.
— Իմ բարեկամ
Աշխատասեր,
Ես էլ կուզեմ
Մետաքս հյուսել:
Կուզեմ քեզ պես
Քուն թե արթուն
Օգուտ բերել
Միայն մարդուն:
— Խնդրեմ, խնդրեմ,
Իմ լավ ծանոթ,
Թե ուզում ես,
Մնա ինձ մոտ:
Բայց, իմացի՛ր,
Վերջում ինձ պես
Բոժոժի մեջ
Պիտի մեռնես:
— Ի՞նչ ես խոսում,
Իմ դրացի...
Որ այդպես է,
Ես գնացի:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՄԵԾԱՑԱՆ

ՄԱՐԱ ՄԵՀՐԱԲՅԱՆ

Զորիկը չէր սիրում, երբ իրեն «Պատիկ» էին կանչում։

— Պատի՛կ ջան, հավերին քշի՛ր։

— Պատի՛կ ջան, պատի՛կ, մի բաժակ ջուր բեր։

Զորիկը ո՞ր մի «պատիկին» դիմանար. վիրավորվում էր դրանից ու բրթմնջում ինքն իրեն. «Ոչ որ Գևորգին «պատիկ» չի ասում։ Յոլակին էլ, Ռուբիկին էլ... հենց միայն ե՞ս եմ թաղի «պատիկը»...

Բայց ահա եկավ այն ուրախալի օրը, երբ հրաշքով «պատիկը» դարձավ «Զոհրաբ»։

Եվ ահա թե ինչպես եղավ...

Առավոտյան արևի ճառագայթները ընկան Զորիկի աչքերին, խտուտեցին դեմքը։ Զորիկը ձեռքի ափերով տրորեց աչքերն ու արթնացավ։ Զարուհին՝ քույրիկը գոռալ-բերեց Զորիկի բլուզն ու ամառային թեթև կոշիկները։ Զորիկը վազեց պարտեզ.

— Պա՛պ, եկա,— ասաց նա և սովորականի պես նստեց խնձորենու տակ դրված նստարանին։

— Էդ չեղավ, Զոհրա՛բ ջան, տղամարդը առավոտից որ նստեց, նրա գործը էլ առաջ չի գնա։ Վե՛ր կաց, փոցխը բե՛ր, էս մարգը փոցխի՛ր,

Զորիկը տեղից չշարժվեց։

— Քեզ եմ ասում է՛,— կրկնեց պապը,— ի՞նչ ես քարացել։

— Ե՞ս, ա՛յ պապ...

— Բա Կիրակո՞սը,— հարցին հարցով պատասխանեց պապը, ու ժպիտը նոր ակոս ավելացրեց նրա ծերունական դեմքին։

Քիչ անց Զորիկը ցախատնից վերադարձավ՝ փոցխը ուսին։

Պապը համբերությամբ բացատրեց, թե ինչպես պետք է բանեցնել փոցխը, և պապ ու թոռ գործի անցան։

Զորիկն աշխատում էր ոչ մի ծեղ դուրս չթողնել փոցխի ատամների տակից ու հետն էլ հաճախ, պապից ծածուկ, ցանկապատից դուրս էր նայում։ Հակառակի պես ոչ որ չկար այնտեղ կարծես ամբողջ թաղում միայն Զորիկն էր մնացել։

«Գոնե տատը տեսներ»— մտածում էր Զորիկն ու ավելի եռանդով շարունակում աշխատանքը...

Ամառնամուտի այդ վերջին օրը որոշել էր միանգամից մի քանի ուրախություն բերել Զորիկի համար։

Երեկոյան դաշտից տուն դառնալիս Զորիկի հայրիկը խանութից աշակերտական մի պայուսակ բերեց։ Տեսնեիք տղայի ուրախությունը...

— Ինչ լա՜վն է։

Բոլորից շատ ուրախացել էր տատը։ Նա պտտվում էր Զորիկի շուրջն ու մերթ հեռացնում էր թոռան ճակատին թափվող գանգուրները, մերթ ուղղում էր բլուզի դուրս թռած ծայրը և ուրախ-ուրախ ժպտում։

Առավոտյան Զորիկն արթնացավ անսովոր աղմուկից. ինչ-որ ծիծաղի և խոսակցության ձայներ էին հասնում ականջին։

Նոր էր աչքերը բացել, ներս ընկավ քույրիկ Զարուհին և շտապելուց շնչասպառ լինելով վրա տվեց.

— Մոսկվայից հորաքույր Մարոն քեզ համար նվե՛ր է ուղարկել։

Երբ արկղիկի տակից դուրս եկավ դպրոցականի համազգեստը, Զորիկը ուրախ ճչաց ու գլուխկոնծի տվեց.

— Ամա՜ն, գլուխդ պոկեցի՜ր,— վախեցած դեպի Զորիկը վազեց տատը. բայց ո՞ւմ ես ասել... հետո նա հագցրեց Զորիկին, գլխարկը ծածկեց և ուղարկեց պատշգամբ՝ պապիկի մոտ։

Պապը մի պահ չճանաչեց իր թոռնիկին. համազգեստի մեջ նա ավելի ձգված և մեծ էր երևում։

Հետո պապը, շուռ ու մուռ տվեց, բոլոր կողմերից նայեց նրան և գիրկն առավ.

— Քո ժամանակն էլ եկավ, թոռնի՛կս, դու էլ դպրոց գնացիր։





# ՏԻԵԶԵՐՔԻ ՃԱՄՓԱՆԵՐՈՎ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԲԱՐԵՎ ՁԵԶ, ԵՍ ԳԵՐՄԱՆ ՏԻՏՈՎՆ ԵՄ

*Վաղորդյան մշուշը դեռ չէր անցել, և արեգակն իր թեք ճառագայթները նոր էր փռել կոլտնտեսային արտերի վրա, երբ կաթնագույն երկնքի ֆոնին երևաց մի փոքրիկ կետ ու սկսեց արագ մեծանալ:*

*Քիչ հետո շաղոտ արտի մեջ մի միայնակ պարաշյուտիստ իջավ: Խոտը շնչելով նա սկսեց արձակել պարաշյուտի կապերը, իսկ երբ նրան մոտեցան մարդիկ, ժպտալով ասաց.*

*— Բարև ձեզ, ես Գերման Տիտովն եմ:*

*Դրա կարիքը, իհարկե, չկար, քանի որ բոլորը ճանաչում էին արդեն նրան և անհամբեր սպասում նրա վերադարձին: Ու նա եկավ, եկավ տիեզերքի հեռուներից, իջավ ճիշտ ժամանակին, նախօրոք նշված վայրում: Մարդիկ նայում էին նրան ու աչքներին չէին հավատում. մի՞թե սա այն մարդն է, որ մի օրվա մեջ տասնյոթ անգամ պտտվեց երկրի շուրջը՝ խորանալով տիեզերքի անհունի մեջ: Նա այնքան հանգիստ էր ու անվրդով, որ կարծես պարաշյուտային սովորական մի թռիչք էր կատարել: Բայց ահա նրանից քիչ հեռու արևի տակ փայլփլում է «Վոստոկ—2» տիեզերանավը:*

*Գերման Տիտովը նայեց տիեզերանավին ու նրա աչքի առաջ կարծես թե վերակենդանացան այն քսանհինգ սխրանքով լի ժամերը, որ նա անցկացրեց այդ նավում: Հետո հիշեց իր ամբողջ կյանքը: Կարծես կինոէկրանի վրա՝ սկսեցին իրար հաջորդել անցած. գնացած, բայց սիրելի պատկերներ, և նա զգաց, որ ամբողջ իր կյանքում պատրաստվել է այս թռիչքին, պատրաստվել է այսօրվան:*

## ՍՈՎՈՐԵԼ, ՍՈՎՈՐԵԼ, ՍՈՎՈՐԵԼ...

*Գեղեցիկ է Վերին Ժիլինո գյուղը, ամռանը ամեն ինչ կանաչում է այստեղ, ծաղկում են դաշտերը: Երեխաները խումբ-խումբ գնում են անտառ՝ սունկ ու մորի հավաքելու և նրանց մեջ է նաև գրականության ուսուցչի տղան, փոքրիկ Գերմանը: Մեծերը ուզում են նրան ետ դարձնել, բայց նա համառում է, լալիս ու վերջապես հասնում իր նպատակին: Հետաքրքրասեր Գերմանն ամեն ինչ ուզում էր փորձել, ամեն ինչ անել: Եթե մեծերը գնում էին ձկնորսության, նա էլ էր ուզում ձուկ որսալ: Եվ տղաները նրան էլ էին հետները վերցնում: Գիտեին, որ համառ տղային դժվար է համոզել: Եվ հետո, ինչո՞ւ պիտի չտանեին: Նրա զամբյուղը միշտ էլ լի էր լինում սունկով ու մորիով, իսկ ձուկ որսալիս նա գոհ էր մնում, եթե նույնիսկ կարթից էլ փոքր մի ձուկ էր բռնում: Մի անգամ դաշտում խոտ էին հնձում, հայրը, Ստեփան Պավլովիչը մի բոպե միայն աչքը նրանից կտրեց, և չորս տարեկան Գերմանը օգտվելով հանգամանքից, մագլցելով բարձրացավ սայլի վրա և ձիու սանձը վերցրած սկսեց քշել:*



Գերմանը շատ էր սիրում իր հորը։ Գրականության ուսուցիչ Ստեփան Պավլովիչը շատ ընդունակ մարդ էր։ Նա և՛ տեխնիկայով էր հետաքրքրվում, և՛ նկարում էր, և՛ ջութակ նվագում։ Գերմանն ամեն ինչում աշխատում էր նմանվել հորը, իսկ երբ դպրոց գնաց, դարձավ բոլորի սիրելին։ Լավ էր սովորում, սիրում էր սպորտը, տեխնիկան։

Մի անգամ Գերմանը հորը հարցրեց.

— Այդ ինչպե՞ս է, որ դու ամեն ինչ հասցնում ես, որտեղի՞ց ես ուժ վերցրել։

Ստեփան Պավլովիչը գրապահարանից հանեց Լենինի 33-րդ հատորն ու կարդաց. «Առաջինը՝ սովորել, երկրորդը՝ սովորել և երրորդը՝ սովորել...»։

Ու Գերման Տիտովն սկսեց սովորել, կարդալ, ուսումնասիրել։ Բոլորը, ովքեր ճանաչում են նրան, պատմում են, որ Գերմանին երբեք առանց գրքի չեն տեսել։

Իր տիեզերական թռիչքից հետո, երբ կարծես թե նա ամեն ինչի արդեն հասել է, Գերման Տիտովն ասաց.

— Հետևելով լենինյան պատգամին, ես սովորեցի և, բատ երևույթին, դեռ շատ ժամանակ կկորցնեմ դասագրքերի վրա։

## ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑ № 2

Առաջին արբանյակը, որ պտտվեց Երկրի շուրջը, Սովետական էր, տիեզերք թռչող առաջին մարդը սովետական քաղաքացի Յուրի Գագարինն էր։ Երբ իր անօրինակ թռիչքից հետո Յուրի Գագարինը պատմում էր իր թռիչքի մանրամասնությունների մասին, հաճախ էր հիշատակում տիեզերագնաց № 2-ին։ Ուժեղ կամքի տեր, խելացի մարդ է № 2 տիեզերագնացը, ասում էր Գագարինը, երևի նրան պահեցին ավելի բարդ թռիչքի համար։ Հիմա հայտնի է, որ № 2 տիեզերագնացը Գերման Տիտովն էր, որը միջնակարգը գերազանցով ավարտելուց հետո մեկնեց ավիացիայի ուսումնարան, դարձավ կործանիչ օդաչու։ Այն ժամանակ արդեն մեր արբանյակներն իրենց պտույտներն էին կատարում Երկրի շուրջը, և Գերման Տիտովը որոշեց տիեզերագնաց դառնալ, թռչել դեպի տիեզերքի հեռուները։ Իսկ ո՞վ չէր ուզում տիեզերք թռչել։ Հազարավոր նամակներ էին գնում Մոսկվա։ Բազմաթիվ երիտասարդներ խնդրում էին իրենց տիեզերք ուղարկել։ Դիմում էին նույնիսկ պիոներները։ Ի՞նչ կա որ, մտածում էին նրանք, կնստենք հրթիռի վրա ու կթռչենք։ Նրանք չգիտեին, որ տիեզերք թռչելու համար միայն ցանկությունը քիչ է, որ անհրաժեշտ է պատրաստված լինել դրա համար, որ տիեզերանավի նման խելոք մի մեքենա ղեկավարելու համար պետք է ո՛չ միայն շատ կազմակերպված լինել, այլև շատ գիտելիքներ ունենալ։ Ընտրվում էին ամենաարժանավորները։

Եվ ահա Գերման Տիտովին օգնության հասան մանկությունից դեպի գիտելիքներն ունեցած անսահման սերը, առողջ մարմինը, ուժեղ, անհողդողդ կամքը, և նա դարձավ տիեզերագնաց։

## ՑՏԵՍՈՒԹՅՈՒՆ, ԵՐԿԻՐ

Ցտեսությո՜ւն... հեշտ է ասելը։ Իսկ եթե դա «ցտեսություն» չէ, այլ հավիտյան «մնաս բարո՞վ»։ Ո՞վ գիտե, չէ՞ որ տիեզերքի ճամփաներով մինչև այդ միայն Գագարինն էր անցել և այն էլ ընդամենը մի պտույտ էր կատարել երկրի շուրջը։ Ո՞վ գիտե, գուցե անկշռայնության կարելի է մեկ-երկու ժամ դիմանալ, իսկ մի օր՝ ոչ։ Գուցե տիեզերանավը, եթե ներքևից չղեկավարվի, կարող է դուրս գալ ուղեծիրից և կորչել տիեզերքի անսահմանության մեջ։ Ահա, հենց այս խնդիրներն էլ աշխարհում առաջին անգամ պետք է պարզեր Գերման Տիտովը։

Հիանալի արևոտ առավոտ էր։ Տիեզերադրոմ էին հավաքվել բոլոր նրանք, ովքեր մասնակցել էին հիանալի տիեզերանավի կառուցմանը, ովքեր պիտի հետևեին թռիչքին, ովքեր պիտի ղեկավարեին թռիչքը, ովքեր պետք է պատրաստեին տիեզերանավը և արձակեին տանող հրթիռը։ Բոլորի տրամադրությունն էլ բարձր էր։ Նրանք սովետական այն առաջին մարդիկ էին, որ նախօրոք հրճվում էին մեր երկրի մեծ նվաճման համար։ Ո՛չ ոք չէր կասկածում, որ թռիչքը հաջող կընթանա։ Չէր կասկածում նաև ինքը՝ տիեզերագնացը։ Թռիչքից առաջ նա դիմելով ներկաներին ասաց.

— Ինձ մեծ բախտ է վիճակվել սովետական «Վոստոկ—2» տիեզերանավով նոր թռիչք կատարել դեպի տիեզերքի հեռաստանները։ Դժվար է արտահայտել հպարտության ու ուրախության այն զգացմունքները, որ համակել են ինձ... Այս րոպեին ես ուզում եմ նորից ու նորից իմ երախտագիտությունն հայտնել հարազատ Լենինյան պարտիայի կենտրոնական կոմիտեին, Սովետական կառավարությանը, Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին՝ իմ նկատմամբ ունեցած վստահության համար և հավաստիացնել, որ իմ բոլոր ուժերը և ունակությունները գործի կդնեմ, որպեսզի այս պատվավոր ու պատասխանատու առաջադրանքը կատարեմ։

Հետո նա մտավ նավի իրեն հատկացրած խուցն ու, երբ հզոր ուժով հրթիռը սլացավ դեպի երկինք, դիմելով տիեզերանավին նա ամբողջ սրտով ասաց.

— Գնացինք, հարազա՛տս։





## ՏԱՍՆՅՈԹ ՑԵՐԵԿ,

## ՏԱՍՆՅՈԹ ԳԻՇԵՐ

*Աշխարհում դեռ ոչ մի քաղաքացիական օդանավ չի գերազանցել «Տու—104»-ի արագությանը, իսկ «Տու» ով Երևանից Մոսկվա հասնելու համար երկուս և կես ժամ է հարկավոր։ Որպեսզի իմանաք, թե ինչ արագություն ուներ «Վոստոկ—2» տիեզերանավը, բավական է ասել, որ Երևանից Մոսկվա հասնելու համար նրան հարկավոր է ընդամենը չորս՛ և կես րոպե։ Ահա այսպիսի արագությամբ էր տիեզերանավը պտտվում Երկրի շուրջը։ Տիտովը երկրագնդին էր նայում այնպես, ինչպես մենք նայում ենք Լուսնին։ Զարմանալի է, չէ՞։ Նայում ես պատուհանից դուրս և տեսնում պտտվող մի մեծ գունդ, և դա ոչ թե մի այլ մոլորակ է, այլ Երկիրը։ Ո՞վ է մեկ էլ աշխարհում նման բան տեսել, միայն Յուրի Գագարինը։*

*Գերման Տիտովն ավելի շատ ժամանակ ուներ երկրագնդով հիանալու՝ տեսնելու նրա արևածագերն ու մայրամուտները մի քանի անգամ։ Բայց նա շատ զբաղված էր, որպեսզի անընդհատ պատուհանից նայի դուրս։ Նա առաջադրանք էր կատարում, նա պետք է հետևեր իրեն, զգացածը գրի առներ, պետք է հետևեր բոլոր սարքերին, պետք է նավը ինքնուրույն վարեր, պետք է ճաշեր, ընթրեր և վերջապես պետք է քներ։*

*Ուղիղ ժամը տասնութն անց 15 րոպեին, երբ նա անցնում էր Մոսկվայի վրայով, բարի գիշեր մաղթեց մոսկվացիներին։ «Խնդրում եմ թանկագին մոսկվացիներին բարի գիշեր հաղորդեք։ Ես հիմա կպառկեմ քնելու։ Դուք ինչպես ուզում եք, բայց ես պիտի քնեմ»։ Ու այդպես էլ քնեց, կատարելով այդ առաջադրանքը ևս։*

*Երկնքում Տիտովի կյանքը նորմալ էր անցնում։ Բազմաթիվ անգամ նա հաղորդեց, որ իրեն լավ է զգում, որ լավ է տանում անկշռությունը, որ նավը հիանալի է ենթարկվում իրեն, իսկ երբ տասնյոթերորդ պտույտը նա ավարտեց և սկսեց տասնութերորդը, թռիչքի ծրագրի համաձայն տիեզերանավն սկսեց իր վայրէջքը։*

*Օգոստոսի յոթի առավոտյան ժամը 10 անց տասնութ րոպեին տիեզերանավը մտնում էր արդեն Երկրին։ Երկրին չհասած, Գերման Տիտովը նավից դուրս թռավ պարաշյուտով՝ փոքր-ինչ վայրէջք կատարելով նաև այդ միջոցը։*

*Երբ նրա ոտներն առան կոլտնտեսային շտապ արտին, Գերման Տիտովը, մոտ վազող մարդկանց դիմելով, ասաց.*

*— Բարև ձեզ, ես Գերման Տիտովն եմ։*

*Սովետական քաղաքացի, կոմունիստ Գերման Տիտովը աշխարհում չտեսնված թռիչք կատարեց։ Նա թռավ Գագարինից հետո, բայց տիեզերքի նվաճման գործում գերազանցեց իր նախորդին՝ պատվով կատարելով Պարտիայի և Կառավարության առաջադրանքը։ Այդ էր պատճառը, որ նա Վնուկովոյի օդանավակայանում մոտենալով Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին բաց ճակատով զեկուցեց*

— Զեկուցում եմ, որ Կենտրոնական Կոմիտեի և կառավարության առաջադրանքը կատարված է։

# ԾՈՎՈՒՄ ՈՐՔԱ՞Ն ՁՈՒԿ ԿԱ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Երեք լիվոռնացի
Ձկնորսներ համառ
Իրար հետ սուր վեճի
Մտան մի ամառ:

Գոռում էին անդադար
Ու տաք-տաք վիճում.
Արդեն մի տարի էր,
Ոչ ոք չէր զիջում:

Եվ գիտե՞ք ինչն էր այդ
Վեճի առարկան.
Թե արդյոք ծովի մեջ
Որքա՞ն ձկներ կան:



Մեկն ասում էր յոթից
Շատ են անկասկած.
Շատ կլինեն յոթից՝
Հրձուկը չհաշված:

Երկրորդը թե՝ հազար
Կլինեն, տղե՛րք,
Շնաձկներն անգամ
Եթե չհաշվենք:

Մյուսը թե՝ անթիվ են
Ձկները ծովի...
Եվ երեքն էլ կարծես թե,
Ճիշտ են յուրովի:

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ԳՅՈՒՂԸ, ՈՒՐ ՆԱ ՄՈԼՈՐՎԵԼ ԷՐ

Փողոցները երկար չափչփելուց հետո Սամվելը համոզվեց, որ ինքը մոլորվել է։ Գյուղն իսկապես անծանոթ էր։ Նա զգուշությամբ ցատկում էր ցեխերի վրայով ու հետաքրքրությամբ նայում ցածրիկ, բարեկամաբար իրար կռթնած տներին։ Հանկարծ այդ տներից մեկի դուռը բացվեց ու բոբիկ ոտքերով դուրս վազեց մի փոքրիկ տղա։ Նրա դեմքը կեղտոտ էր, հագուստը՝ մի փոքր խունացած։

«Ահա՛, թե ինչու մեր դասարանի տղաները Հակոբին, «փնթի» են՛ ասում։ Ախր նա էլ է գյուղից եկել»,— մտածում էր Սամվելը ու համեմատում այդ տղային իր եղբոր հետ։ Որքա՜ն գունագեղ հագուստներ ուներ Գեղամիկը։ Իսկ մայրիկը նրան նույնիսկ խոհանոց չէր թողնում բոբիկ։ Ողջ ճանապարհին Սամվելին էին հանդիպում գյուղացի տղաներ, տարեց ծերունիներ։ Նրանք բոլորն էլ գորշ թավշից կարված հագուստներ էին հագել։

«Այդ ի՞նչ հագուստներ են,— մտքում ծիծաղում էր Սամվելը նրանց վրա,— իսկ մազերը կարծես մկրատով են կտրել»։ Գյուղացիներն էլ կանգնում և ուշադիր նայում էին Սամվելին, կարծես ուզում էին անպայման ճանաչել։ Բայց Սամվելին թվում էր, որ գյուղացիները նախանձում են իր հագուստներին։

«Իզուր էլ մորաքրոջս կարած վերջին մոդայով հագուստներս չհագա,— ափսոսում էր նա,— թող բոլորը գժվեին զարմանքից»։ Հասնելով գյուղի հրապարակը, նա կանգ առավ։ Չգիտեր ինչպես շարունակեր ճանապարհը, որպեսզի հասներ սարում թողած իր ընկերներին։ Սերթ ուզում էր մոտենալ պատի տակ նստոտած ծերունիներին և հարցնել ճանապարհը, բայց կարծում էր, թե նրանք չեն հասկանա իր՝ «քաղաքացու» լեզուն։ Մի քիչ էլ տատանվելուց հետո նա ընտրեց համեմատաբար մաքուր փողոց ու շարժվեց առաջ։ Հանկարծ զգաց, որ սոված է։ Առավոտից նա ոչինչ չէր կերել։ Սամվելը հիշեց քաղաքից իրենց հետ բերած բուլկիները, համեղ երշիկները ու զգաց, որ գլուխը պտտվում է։

«Ա՛յ, թե սար հասնեմ, երկու բուլկին միանգամից եմ ուտելու»—երազում էր Սամվելը, երբ զգաց, որ բերանում թուք է հավաքվում։ Նոր թխվող լավաշի գրգռիչ բույրը լցրել էր փողոցը։ Սամվելը իսկույն նկատեց, որ այն տանից, որտեղ լավաշ էին թխում, ամպագույն ծուխ է բարձրանում։ Նա քաղցած աղվեսի պես մի քանի անգամ անհամարձակ պտտվեց տան շուրջը։ Հետո գրպանում պինդ սեղմեց դրամը ու մոտեցավ պատուհանին։ Սենյակում ծուխը բարակ շղարշ էր քաշել։ Երկու պառավ կին ծալապատիկ նստել էին թոնրի շրթին։ Նրանցից մեկը արագ-արագ բացում էր խմորի դեղնավուն գնդերը, իսկ մյուսը վերցնում էր դրանք ու խփում թոնրի պատերին։ Քիչ անց նա հանում էր տաք լավաշները ու փռում սփռոցի վրա։ Թարմ, ծաղկանկար տեսքով լավաշներից բարակ գոլորշի էր բարձրանում։ Սամվելը չհամբերեց ու գլուխը մտցրեց պատուհանից ներս.

— Տատի ջան,— թուքը կուլ տալով խնդրեց նա,— ծախու լավաշ չունե՞ք։

Պառավներից մեկը ծխից արցունքոտված աչքերը հառեց պատուհանին ու հարցրեց.

— Դու ո՞ւմ տղան ես, բալա ջան։

— Հե՛չ,—շփոթվեց Սամվելը—այստեղացի չեմ։ Քաղաքից էքսկուրսիա էինք եկել, ճամփան շփոթել եմ։

— Դե ներս արի, տղա ջան, ներս արի, խնդրեցին պառավները։

Արագ շարժումներով լավաշ թխող կինը սեղանի վրա հանեց մի աման մածուն, թարմ լավաշներ ու դարձավ Սամվելին.

— Դե, բալա ջան, մի՛ ամաչիր, նստիր կեր, սոված կլինես։

Սամվելը նստել էր սեղանի մոտ ու քաշվում էր ուտել։ Նա նույնիսկ մտածեց քաղաքավարության համար հրաժարվել, ինչպես քաղաքում էր անում, երբ մայրիկի հետ մի տեղ հյուր էր գնում։ Բայց թարմ լավաշի բույրը պտտեցնում էր նրա գլուխը։

«Համ էլ հո ծրի չի,—խրախուսում էր ինքն իրեն,—փող եմ տալու։ Ընդունենք թե ռեստորանում եմ»։ Ուտելիքը անչափ համով էր։ Սամվելը արագ-արագ խփշտում էր պանրի պես թանձր մածունը ու բացատրում, թե ո՛ր սարն են իրենք եկել և ինչպես է ինքը շփոթվել։

— Դու հանգիստ հացդ կեր,—հորդորում էր պառավը,—թոռս քեզ կուղեկցի։

Սամվելը զարմացավ, երբ զգաց, որ դրամը կպավ ափսեի հատակին։

«Այսքան մածունը ո՞նց կերա»—մտածեց նա։

Սամվելը վեր կացավ տեղից ու շնորհակալություն հայտնեց։

— Վա՛, բա մարդ էդքան մածունով կկշտանա՞,—զարմացավ տատիկը,—սպասիր մի աման էլ լցնեմ։

— Շնորհակալ եմ, կշտացա,—ասաց Սամվելը, և ուզում էր գնալ, երբ հարևան սենյակից դուրս եկավ մի ծերունի։ Նա Սամվելի գրպանը լիքը չիր լցրեց, ասելով.

— Էս էլ մեր բաղիցն ա։

Սամվելը շփոթված ծերունու սիրալիրությունից, շնորհակալություն հայտնեց ու սեղանին սահեցրեց հայրիկի տված ռուբլին։

— Վա՜յ, դու չե՞ս ամաչում, ա՛յ տղա,—ասաց ծերունին։

— Ուրեմն մենք հայ չե՞նք, մենք քրիստոնյա չե՞նք էլի,—կե՛րկերուն ձայնով ասաց քիչ առաջվա լավաշ թխող կինը, ու նրա աչքերը լցվեցին արցունքով։

Սամվելը զգաց, որ ինքը վիրավորեց նրանց։

— Շա՜տ, շա՜տ շնորհակալություն,—ասաց նա ու փողը վերցնելով, տնից դուրս եկավ։

Իր փոքրիկ ուղեկցի՝ ծերունու թոռան հետ Սամվելը անցավ գյուղի փողոցով։ Երբ հասան փողոցի ծայրը, տղան կանգ առավ.

— Ա՛յ, տեսնու՞մ ես էն սարը—մատով ցույց տվեց նա, լանջին վազվզողներն էլ երևի քո ընկերներն են։

— Այո՛, այո՛, նրանք են—ուրախացած պատասխանեց Սամվելը,— դու տուն գնա։

Բայց երբ տղան հեռացավ, Սամվելը չշտապեց դեպի սար։ Նա կանգնել էր փողոցի ծայրին ու ջերմ սիրով նայում էր այն տանը, որտեղից շարունակում էր բարձրանալ ամպագույն ծուխը...

*ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ*

*(Րաֆֆու անվան դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ)*

*Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*





# ԲՈՒՅՍԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*ՄԻԽԱՅԻԼ ԼԸԿԱՏՆԻԿ*

Ձեզ թվում է, թե բույսերը շատ սովորական բան են, և երբեք ուշադրություն չեք դարձնում նրանց վրա: Բայց գիտե՞ք, որ բույսերի աշխարհը շատ հարուստ է, հարուստ ու հետաքրքիր: Գիտնականները տարբերում են մոտ 500 հազար բույսերի տեսակ: Եվ, ընդհանրապես, առանց բույսերի գոյություն չէին ունենա ոչ մարդիկ, ոչ էլ կենդանիները: Այսպես օրինակ, ցորենի հատիկներից մենք ստանում ենք հացը, այն հացը, որ ուտում ենք ամեն օր, հաճարից՝ համով ու բուրումնալից հաճարաբլիթը: Իսկ կարտոֆիլը, որ այնպես համեղ է և՛ խաշած, և՛ խորոված, և՛ տապակած, բոլորիս սիրելի ուտելիքն է: Հապա թե՛յը, որ խմում ենք ամեն առավոտ, մի՞թե նորից բույս չէ: Կամ շաքարը, որով քաղցրացնում ենք այն: Էլ չենք խոսում լոբու, ոսպի, սիսեռի, պոմիդորի, գազարի և դեռ շատ ու շատ բաների մասին, որոնցով սնվում ենք ամեն օր:

Հապա ուշադրությամբ նայեք ձեր չորս կողմը և ուրիշ շատ բաներ կտեսնեք: Այս սեղանը, որի վրա գրում եք ձեր տնային վարժությունները, փայտից է, աթոռը, որի վրա նստած եք այժմ՝ նույնպես: Հատակը մանճակալները, լուսամուտները, դռները, ձեր ձեռքի մատիտը, տետրերը, գրքերը: հապա ձեր վրայի զգեստնե՞րը, մի՞թե նրանք էլ բամբակից կամ կանեփից չեն, որ այնպես առատորեն աճում են մեր դաշտերում:

Այս ամենը Միտկո Հետաքրքրասերը կարդաց մի գրքում, որ նա անցյալ օրը վերցրել էր գրադարանից: Եվ հիմա նա շատ էր ուզում շրջել ամբողջ երկրագնդով մեկ և ծանոթանալ աշխարհի անթիվ ու անհամար բույսերի հետ: Այդ պատճառով նա անհամբերությամբ սպասում էր իր կախարդ ընկերոջը: Ամենակարողիկը չուշացավ: Շատ չանցած նա բաց արեց Միտկոյի սենյակի դուռն ու ժպիտը դեմքին՝ հարցրեց.

— Հիմա ինչո՞վ ես ուզում, որ ճանապարհորդենք:

Միտկո Հետաքրքրասերը միտք արեց.

— Աքլորանյակով լավ չի լինի,—ասաց նա,—հըրթիռով՝ նույնպես: Դրանք շատ արագ են թռչում, և ոչինչ չենք տեսնի: Ավելի լավ կլինի ինքնաթիռով գնանք, որպեսզի կարողանանք մեր ուզած տեղն իջնել:

— Ո՛չ,—կտրուկ որոշեց Ամենակարողիկը:—Կճանապարհորդենք իմ նախահոր՝ կախարդ Աբդուլ-Ռահմանի նման, այսինքն՝ կախարդական խալիով:

— Կախարդական խալիո՞վ, բայց որտեղի՞ց կճարենք այդպիսի խալի:

— Հրես, չե՞ս տեսնում:

Այս ասելով կախարդ-Ամենակարողիկը կռացավ ու հավաքեց գետնին փռված փոքրիկ կարպետը:

— Բայց դա հո կախարդական խալի չէ՞,—գոչեց Միտկոն զարմացած:

— Խալիչան կախարդական չէ, բայց դու մոռանում ես, որ ես եմ կախարդ: Իսկ եթե ես կախարդ եմ, ուրեմն իմ ձեռքի խալին էլ կախարդական կդառնա: Ահա տես. «Հալա՛-բալա՛, նիցա՛...»

Եվ Ամենակարողիկը ձեռքից բաց թողեց խալիչան, որն ազատ կանգնեց օդի մեջ:

— Դե լուսամուտը բաց, որ դուրս թռչենք:

Միտկոն բաց արեց լուսամուտը: Երկու ընկերները շատ հարմար տեղավորվեցին խալու վրա ու ճամփա ընկան:

— Արկտիկայի ուղղությամբ շարժվիր,—հրամայեց Ամենակարողիկը:

Թե ինչպիսի արագությամբ էին թռչում իրենք, Միտկոն չկարողացավ որոշել, բայց շուտով նա զգաց, որ մրսում է և ցած նայելով տեսավ հսկայական սառցե տարածություններ:

— Մենք գտնվում ենք Արկտիկայի սառցե անա-

պատների վրա,— ասաց ամենակարողիկը։— Այստեղ բուսականություն համարյա թե չկա։

Միտկոն ցած նայեց։

— Ամենակարողիկ,— հարցրեց նա մատով ցույց տալով մի ընդարձակ տարածություն,— ինչո՞ւ այստեղ ձյունը կարմիր է։

— Այդ «աֆերելա նիվալիս» կոչվող ջրաբույսից է։ Այդ բույսն աճում է միմիայն ձյան վրա։ Կարմիր գույնը նրան օգնում է ավելի հեշտ և առատորեն ընկալելու արևի ճառագայթները։ Իսկ արևն այստեղ, ինչպես գիտես, այնքան էլ չի տաքացնում։ Կան նաև ջրաբույսեր, որոնք կանաչ կամ դարչնագույն են ներկում ձյունը։

— Կախարդական խալիչան այնուհետև երկու ճանապարհորդներին տարավ մի փոքր ավելի հարավ՝ տունդրաների կողմը։ Այստեղ բուսականությունն աղքատիկ էր ու շատ ցածր էր աճում։ Ամենաբարձր բույսը 15 սանտիմետր էր։ Ինչպես գիտեք, այդ տեղերում ձմեռը ցուրտ ու երկարատև է լինում, իսկ ամառը՝ շատ կարճ։ Ամենաշոգ օրերին ջերմաստիճանը հազիվ մինչև տասը աստիճան է բարձրանում։

— Ամենակարողի՛կ,— դիմեց ընկերոջը Միտկո Հետաքրքրասերը,— ես շատ եմ ուզում արտասովոր, զարմանահրաշ բույսեր տեսնել։ Գնա՛նք տրոպիկական բույսերի աշխարհը։

Քիչ հետո խալին նրանց թռցրեց փշատերև ծառերի, կաղնու ու հաճարենու լայնարձակ անտառների վրայով, անցավ ռուսական ստեպների ու հունգարական տափաստանների, հյուսիս-ամերիկյան պրերիաների ու հարավի պամպաների վրայով, ապա անցավ Ասիայի ու Աֆրիկայի անապատների վրա։ Այն կակտուսները, որ Միտկոն տեսել էր միայն թաղարների մեջ, այս անապատներում աճում էին ազատ ու ընդարձակ, մեծ-մեծ, փշոտ տերևներով։ Կենտրոնական Ամերիկայում նրա վրա հատկապես ուժեղ տպավորություն թողեց կակտուսի մի տեսակը, որը տասնհինգ մետր բարձրություն ուներ։ Նրա տերևներն այնպես հետաքրքիր ձևով էին վեր ցցված, կարծես մոմակալի մեջ շարված մոմեր լինեին։

Երբ թռչում էին Հնդկաչինի վրայով, Միտկո Հետաքրքրասերն ինչ-որ մի անտառ նկատելով, հարցրեց.

— Այդ ի՞նչ անտառ է, Ամենակարողիկ։

— Դա անտառ չէ,— պատասխանեց Ամենակարողիկը։— Եկ իջնենք այստեղ ու բանան ուտենք։ Այդ ծառերից ամեն մեկը մինչև հինգ հարյուր մետր տրամագիծ ունեցող մի պսակ է կազմում իր շուրջը։

— Բայց այստեղ շատ ծառեր կան,— զարմացած ասաց Միտկոն։

— Դրանք ծառեր չեն, այլ բանանի արմատներ։ Բանանն այդպես է աճում։ Ծառաբունն ինքը մենակ չի կարողանում անել պտուղով ծանրաբեռնված ճյուղերը, դրա համար էլ ամեն մի ճյուղ իր համար օդային արմատ է բաց թողնում։ Այդպիսով, մի բանանի ծառից հետզհետե ամբողջ մի անտառ է գոյանում։ Ա՛յ, տեսնո՞ւմ ես, այնտեղ մի բանանի ծառը ծածկել է ամբողջ հնդկական մի տաճար։

Տաճարն ուսումնասիրելուց հետո Միտկոն ու Ամենակարողիկը նորից բարձրացան կախարդական խալիչայի վրա։

Ավստրալիայում նրանք տեսան աշխարհի ամենաբարձր ծառերը՝ էվկալիպտները, որոնք 155 մետր բարձրություն ունեին։

— Բայց էվկալիպտները ամենաբարձր բույսերը չեն, Միտկո, գոյություն ունեն ռոտանգներ կոչվող լիան-արմավներ, որոնք աճում են տրոպիկական խոնավ անտառներում և մինչև 400 մետր բարձրության են հասնում։ Նրանցից մեկի պտուղը հայտնի է ամբողջ աշխարհում, դա բոլորիս հայտնի սև պղպեղն է։

— Իսկ ես կարծում էի, թե սև պղպեղը թփի վրա է լինում։

Երբ ճանապարհորդները թռչում էին Սումատրա կղզու վրայով, Միտկոն հանկարծ բացականչեց.

— Ամենակարողիկ, տես թե ի՛նչ մեծ ծաղիկ է։

Իսկապես, ներքևում, արևոտ դաշտում մի վիթխարի, վառ-կարմիր ծաղիկ էր ծաղկել։ Ծաղիկը հինգ հսկայական թերթեր ուներ, նույնպիսի մի հսկայական բաժակ էլ միջնեղում։

— Դա ռաֆլեզիա կոչվող տրոպիկական ծաղիկն է,— բացատրեց Ամենակարողիկը։— Շատ տհաճ է բուրում, միայն բզեզներն են մոտենում նրան և նրանք էլ փոշոտում են այդ ծաղիկը։ Մակաբույծի նման աճում է լիաների ու մյուս ծառերի ար-

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

մատների վրա: Ռաֆլեզիայի ծաղիկը մինչև 140 սանտիմետր տրամագիծ է ունենում:

Տրոպիկական գետերի ու լճերի մեջ Միտկոն ջրաշուշաններ տեսավ: Բայց ի՜նչ ջրաշուշաններ: Ամեն մի թերթը երկու մետր լայնություն ուներ և մինչև 50 կիլոգրամ ծանրության կդիմանար: Միտկոն նստեց մի այդպիսի ծաղկաթերթի վրա ու նավակ դարձրած սկսեց նրանով պտտվել ջրի երեսին:

Այդ ջրաշուշանները կոչվում են վիկտորիա-ռեգիա. նրանք ծաղկում են տասը տարին մեկ անգամ և բաց-վարդագույն են լինում:

Հյուսիսային Ամերիկայում Միտկոն տեսավ սեկվոյադենդրոն կոչվող ծառ-հսկան: Այդ ծառը 150 մետր բարձրություն ուներ, իսկ ցողունի տրամագիծը 15 մետր էր: Այդ ծառը կոչվում է նաև «մամոնտյան ծառ»:

Աֆրիկայի սավաններում Միտկոն ու նրա կախարդ ընկերը տեսան բաոբաբներ, որոնք այնքան էլ բարձր չէին, բայց ծառաբներն այնքան հաստ էին, որ Միտկոյի նման քսան տղա ձեռք-ձեռքի տված, հազիվ կարողանային գրկել:

— Է՜հ, Միտկո, եկ վերադառնանք,— ասաց Ամենակարողիկը:— Առանց այդ էլ մենք չենք կարող աշխարհի բոլոր տեսակի բույսերի հետ ծանոթանալ. դրանք այնքան շատ են ու բազմապիսի:

Կախարդական խալու վրա կատարված ճանապարհորդությունը հիանալի էր: Միտկոն մինչև օրս էլ չի մոռանում այն:




ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Այս դեպքը պատահել է հին-հին ժամանակներում: Աշխարհի երեսին իր հայրիկի ու մայրիկի հետ ապրում էր մի չար տղա: Ոչ ժամանակին էր ուտում, ոչ էլ քնում էր ժամանակին: Դրա համար էլ մեծանալու փոխարեն, փոքրանում էր ու փոքրանում: Այնքան փոքրացավ, որ դարձավ լուցկու հատիկի չափ. գլուխն էլ՝ լուցկու հատիկի գլխի պես: Դրա համար էլ նրա անունը դրին Լուցկու Հատիկ:*

*Լուցկու Հատիկենց տունը գյուղի ծայրին էր: Տան կողքին, բլրի ստորոտում մարգագետնի մի բարակ շերտ կար:*

Մի առավոտ Լուցկու Հատիկի հայրը, որի անունը Հակոբ էր, նրան ասաց.

—Լուցկու՛ Հատիկ, հերիք է ճմլկոտվես: Էշը մոտերքում արածեցրու, ես նկուղն իջնեմ, պարկերը ցորեն լցնեմ, գնանք քաղաք:

Իսկ գիտե՞ք, թե Լուցկու Հատիկը էշին ինչպես էր արածեցնում: Չէ՞ որ նա շատ փոքրիկ էր և եթե էշի կողքից քայլեր, ապա կարող էր ճզմվել նրա սմբակների տակ: Այդ պատճառով էլ հայրը նրան նստեցնում էր էշի ականջում: Այնքա՜ն հետաքրքիր ծակուծուկեր կան այնտեղ: Լուցկու Հատիկը ականջից ոտները դուրս կախած՝ նրան ասում էր.

—Իշու՛կ ջան, այդ կողմը մի՛ գնա, փոս է: Իշու՛կ ջան, ոտներիդ տակը քար կա, զգու՛յշ: Իշու՛կ ջան, հեռանում ես տնից...— և այս տեսակ խոսքեր:

Բայց որովհետև Լուցկու Հատիկը գիշերը ժամանակին չէր քնել, դրա համար էլ քունը գլուխն էր, և հենց որ հայրիկը իջավ նկուղ, ինքը քաշվեց ականջի մի տաքուկ անկյունը, աչքերը փակեց ու ննջեց:

Հայրը պարկերը ցորենով լցրեց, բարձրացրեց իրենց տան շեմքին և ձայն տվեց.

— Լուցկու՛ Հատիկ, Լուցկու՛ Հատիկ, էշը մո՛տ բեր, բարձեմ:

Լուցկու Հատիկը լսո՞ւմ է, որ պատասխանի: Հակոբը մոտեցավ էշին, և ի՜նչ տեսնի, Լուցկու Հատիկը մուշ-մուշ քնել է: Հայրիկը խղճահարվեց և նրան չարթնացրեց: Էշը բարձեց և ճամփա ընկավ: Հակոբ հայրիկը՝ էշի կողքով, Լուցկու Հատիկը՝ էշի ականջում: Հասան քաղաք: Հակոբը ցորենը ծախեց, հետո մտավ մի խանութ, կնոջ համար չիթ գնեց և բռնեց գյուղի ճամփան, ինքը էշի վրա, Լուցկու Հատիկը՝ ականջում քնած: Տուն հասավ թե չէ, չիթը տվեց Լուցկու Հատիկի մայրիկին:

— Այս ինչ անպետք չիթ ես առել,—ճվճրվաց կինը, — բա մարդ այս փալասին փող կտա՞: Շու՛տ արա, տար ե՛տ տուր, ուրի՛շը բեր:

Հակոբը, ճարը կտրած, բռնեց քաղաքի ճամփան, ինքը էշի վրա, Լուցկու Հատիկը՝ ականջում քնած: Լավ էր, որ քաղաքը հեռու չէր: Ընդամենը մեկ ժամվա ճամփա: Տեղ հասավ, էշը կապեց մի սյունի, չիթը ձեռքին մտավ խանութ և ասաց.

— Նորի՛ց բարի աջողում, դուքանչի ախպեր: Քո չիթը լավը չի: Կա՛մ փողս վերադարձրու, կա՛մ ուրիշ չիթ տուր:

Խանութպանը հոնքերը կիտեց և պատասխանեց.

— Ա՛յ բալի գյուղացի, առևտուրն արել-վերջացրել ենք: Բա որ ամեն մեկը ապրանքը տանի, ետ բերի, առևտուր կլինի՞: Ես քեզ հետ խա՞ղ եմ անում, ի՞նչ է, գնա բանիդ:

Հակոբ հայրիկը մտածեց, որ այս մարդը կարծես թե խելքի մոտ բան է ասում: Նստեց էշին և հայդա՝ դեպի գյուղ: Լուցկու Հատիկը դեռ քնած էր ականջում: Հե՞շտ է արթնանալը, երբ մարդ գիշերը ժամանակին չի քնում:

Հակոբը տուն հասավ և կնոջը պատմեց, թե խանութպանը այսպես-այսպես բան ասաց:

Կինն էլ ջղայնացավ:

— Ա՛յ շաշ, բա դու լեզու չունե՞ս բերանումդ: Նրան կասեիր թե՝ «Անամո՛թ, առևտու՞ր ես անում, թե՞ խաբեություն. իմ հալալ վաստակը գողում ես, անպատկա՛ռ»:

Հակոբ հայրիկը վերադարձավ քաղաք և ինչպես որ կինը պատվիրել էր, այդպես էլ ասաց:

Խանութպանը կաս-կարմիր կտրեց և գոռաց.

— Այդ ու՞մ ես անպատվում, քնձռոտի մեկը: Դու՛րս իմ խանութից, քանի դեռ այս կշռաքարը գլխիդ չեմ տվել:

Եվ որովհետև կինը Հակոբին ասել էր, որ նա բերանում լեզու ունի, ուստի այդ լեզվով պատասխանեց.

— Ինձ էշի տե՞ղ ես դրել: Էշը էն է, որը-

տում կապած է։ Խաբեբա՛, անամո՛թ։

Բանը հասավ տուրուգմբոցի։ Ոստիկանը եկավ, Հակոբին ու էշին տարավ ոստիկանատուն։ Հակոբ հայրիկը՝ էշի հետևից, Լուցկու Հատիկը՝ ականջում քնած։ Հակոբին մի լավ ծեծեցին, էշին ձեռ չտվին։

Արևը մայր էր մտնում, երբ Հակոբը ծեծված, ջարդված հասավ գյուղ, ինքը էշի վրա, Լուցկու Հատիկը՝ ականջում քնած։ Գյուղացիները տեսան, որ Հակոբը լավ վիճակի մեջ չէ, նրան շրջապատեցին, սկսեցին հարցուփորձ անել ու կարեկցել։ Հակոբն էլ պատմեց. ես՝ այսպես, կինս՝ այդպես, խանութպանն՝ այնպես։ Ինչպես որ պատահել էր, սկզբից մինչև վերջը պատմեց։ Գյուղացիները վրդովվեցին, սպառնալիքներ նետեցին խանութպանի հասցեին, աղմկեցին ու վերջապես...

Լուցկու Հատիկը արթնացավ, հորանջեց, էշի ականջից դուրս նայեց և շշմած-շշմած հարցրեց.

— Հայրի՞կ, բա քաղաք չե՞նք գնալու։

— Սա ի՞նչ է ասում,— զարմացավ մի գյուղացի, և բոլորը բարձր-բարձր ծիծաղեցին։

— Էշի ականջում քնել էր,— ձեռքը թափ տվեց Հակոբը։

Այդ օրվանից էլ բանից անտեղյակ, շշմած երեխաներին ասում են՝ «էշի ականջում քնել է»։ Ոմանք պնդում են, թե Լուցկու Հատիկը ուղտի ականջում է քնել, ո՞վ իմանա, կարող է այդպես է։ Բայց որ այս դեպքը պատահել է, դրանում կասկած չկա։



# Հիմար Ջեկը

(Անգլիական հեքիաթ)

Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

Կար-չկար, Ջեկ անունով մի տղա կար։ Ջեկը աշխարհում մի պառավ մայր ուներ և էլ ուրիշ ոչինչ։ Մայրը, բուրդ մանելով, հազիվ կարողանում էր օրվա ապրուստը ճարել։ Իսկ Ջեկն այնքան ծույլ էր, որ ամռանը օրն ի բուն պառկում էր արևի տակ, ձմռանը՝ նստում վառարանի կողքին։

Վերջապես, մայրը ստիպեց, որ նա գործի մտնի՝ Ջեկը ընդունվեց մի ագարակատիրոջ մոտ՝ մի փեննի օրավարձով։ Նա կյանքում դրամ չէր տեսել և չգիտեր ինչպես վարվել դրա հետ։ Եվ, երբ վարձն ստացած, տուն էր վերադառնում, Ջեկը մի պահ կանգ առավ առվում լողացող բադիկների մոտ։ Բայց մեկ էլ հանկարծ ստացած դրամը ձեռքից սահեց ու ընկավ ջուրը։

— Հիմար տղա,— ասաց մայրը, երբ Ջեկը տուն հասավ,— եթե փեննին գրպանումդ լիներ, հո չէր կորչի։

— Լա՛վ, մյուս անգամ այդպես կանեմ,— ասաց Ջեկը։

Հաջորդ օրը Ջեկը նախիրը տարավ արոտավայր։ Երեկոյան ստացավ մի կուժ կաթ իր աշխատանքի դիմաց։

Ինչպես խոստացել էր մորը, այս անգամ կուժն դրեց բաճկոնի մեծ գրպանը։ Մինչև տուն հասնելը կաթը թափվել էր։

— Աստվա՜ծ իմ, ինչո՞ւ գլխիդ վրա չդրեցիր։

— Մյուս անգամ այդպես կանեմ,— ասաց Ջեկը։

Հաջորդ օրը ագարակատերը նրան տվեց մի գունդ կարագ։ Ջեկը գնաց տուն՝ կարագի գունդը դրած գլխին. մի մասը հալվեց թափվեց, իսկ մնացածն էլ խառնվեց մազերի հետ։

— Հիմա՛ր տղա,— ջղայնացավ մայրիկը,— ձեռքերիդ մեջ պահած բերեիր կարագը։

— Մյուս անգամ այդպես կանեմ,— ասաց Ջեկը։

Հաջորդ օրը նա գնաց ծառայելու հացթուխի մոտ։ Իր աշխատանքի համար ստացավ մի մեծ կատու։ Ջեկը վերցրեց կատուն և ձեռքերով բռնած, ուզում էր վերադառնալ տուն, բայց կատուն այնքան ճանկռոտեց Ջեկի ձեռքերը, քիթը և բերանը, որ նա ստիպված բաց թողեց կատվին և դատարկ վերադարձավ տուն։ Երբ մայրը իմացավ պատահածի մասին, ասաց.

— Հարկավոր էր մի պարան կապել կատվի վզից և քարշ տալ։

— Այդպես կանեմ մյուս անգամ։





Հաջորդ օրը Ջեկը աշխատեց մսավաճառի մոտ։ Երեկոյան ստացավ մսի մի մեծ կտոր։ Ջեկը պարանով կապեց միսը և սկսեց քարշ տալ հետևից։



Բայց դա էլ չօգնեց։ Երբ Ջեկը տուն հասավ, միսը չկար, շունը տարել էր։ Նրանք կիրակի օրը միս չունեցան ճաշին։

— Եթե դու քո ուսերին դնեիր միսը, այդպես չէր կորչի,—գոռաց մայրը։

— Մյուս անգամ այդպես կանեմ,—խոստացավ Ջեկը։

Նա նորից գնաց ագարակատիրոջ մոտ՝ ոչխարի հոտը արածեցնելու։ Որոշ ժամանակ անց, տերը նրան վարձատրեց՝ նվիրելով մի էշ։ Չնայած Ջեկը ուժեղ էր, բայց էլի դժվար էր էշը ուսերին հասցնել տուն՝ առանց փորձանքի։ Ինքը քանի որ խոստացել էր մորը, մի կերպ էշը շալակին տեղավորելով, քայլեց դեպի տուն։

Ճամփին նա անցնում էր մի հարուստ մարդու տան մոտով։ Այդ մարդու միակ աղջիկը խուլ և համր էր։ Նա իր կյանքում երբեք չէր ծիծաղել։ Բժիշկները ասել էին, որ նա կլավանա։ Միայն այն դեպքում, երբ որևէ մեկը կարողանա նրան ուժեղ ծիծաղեցնել։

Աղջկա մայրը այդ մասին տեղեկացրել էր ամբողջ քաղաքին, մեծ պարգև խոստանալով նրան, ով կարողանա ծիծաղեցնել իր աղջկան։

Աղջիկը կանգնած լուսամուտի առաջ՝ նայում էր դուրս։ Հանկարծ տեսավ մի տղա, էշը շալակին անցնում է իրենց տան մոտով։ Էշը ոտքերը կախած՝ ճոճում էր։ Դա այնքան ծիծաղելի էր, որ աղջիկը ծիծաղեց և հենց այդ րոպեից նա կարողացավ խոսել և լսել։ Ջեկին տարան աղջկա հոր մոտ։ Մինչ հայրը պատմում էր ամբողջ եղելությունը, Ջեկը շշմած նայում էր առանց ցած դնելու իր կոկիկ բեռը։ Միայն այն ժամանակ Ջեկը սթափվեց, երբ հարուստը նրան տվեց մի բուռ ոսկի։ Այնուհետև Ջեկն ու մայրը երջանիկ ապրեցին։

Թարգմ. Ն. ՑՐՈՒՆՋՅԱՆ



# ԻՄ ՏԻԿՆԻԿՆ ՈՒ ՆՈՐ ԲՆԱԿԱՐԱՆԸ

*ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ*

Ամեն երեկո հայրիկը խոսում էր նոր բնակարանի մասին. ո՞ւր են հասել կառուցողները, ի՞նչ աշխատանքներ են մնացել, ե՞րբ են ավարտելու։ Իսկ նա հո հենց այնպես չէր պատմում, այդ մասին հարցնում էր մայրիկը։

Իմ տիկնիկն ու ես լսում էինք։

— Կատյա, մենք էլ պետք է մայրիկի նման պատրաստվենք, պետք է լվացք անենք, անկողինները քանդենք՝ բարձ, վերմակ, ամեն ինչ մաքուր լվանանք,—ասում էի տիկնիկիս։ Կատյան շարժում էր գլուխը, դա նշանակում էր՝ «Այո՛, այո՛» համաձա՛յն եմ, համաձա՛յն եմ...»

Իմ Կատյան տիկնիկ է. դե տիկնիկները ոչ լսում են և ոչ էլ խոսում, բայց իմ Կատյան և՛ լսում է, և՛ խոսում. միայն ինձ հետ, ուրիշ ո՛չ ոքի։ Այո՛, այո՛, երբ ես հիվանդանում էի, նրա աչքերն արցունքով էին լցվում, իսկ երբ հայրս պատմում էր նոր բնակարանի մասին, նա էլ ուրախանում էր ինձ հետ։

Մի օր, երբ մենք՝ մայրիկս, Սուսաննան, ես ու Կատյան մեծ գործերով էինք զբաղված, հայրիկը ներս մտավ՝ մի ահագին թղթե փաթեթ ձեռքին։

— Ո՞վ կարող է գուշակել, թե ինչ կա այստեղ,— ասաց նա։

— Կոշիկներ,-բղավեցի ես, բայց հայրիկը գլուխը շարժեց։

Ես ուզում էի նորից գուշակել. բայց Սուսաննան արդեն բաց էր արել արկղիկը։

Նոր տիկնիկ էր. այնքան մե՜ծ, այնքան գեղեցի՜կ։

Մայրիկը մի քիչ բարկացավ. «Տիկնիկներով տո՞ւն ենք շինելու, ինչ է։ Նոր բնակարան ենք գնալու, հազար ու մի բան հարկավոր կլինի, իսկ դու հա՛ տիկնիկ ես գնում»։

Հայրիկը ծիծաղելով շոյեց մայրիկի ուսն ու ասաց. «Այսպիսի տիկնիկ Անահիտը չուներ»։

Ես Բացի Կատյայից, ունեի երկու ուրիշ տիկնիկ ևս՝ Անուշիկը, բոլորովին մերկ, մի փոքրիկ աղջիկ, որին ես ու Կատյան միշտ լողացնում էինք, և Քնարիկը՝ կարմիր գոգնոցով, մազերը դեղնավուն. պառկեցնելիս նա փակում էր աչքերը, իսկ շարժելիս լաց էր լինում։

Իսկ նոր տիկնիկի նման ոչ մի տեղ չէի տեսել, նա մեծ էր, իմ ծնկներին էր հասնում նրա բոյը. և կարողանում էր քայլել։ Շարժվում էին շրթունքները, աչքերը, ոտքերը։ Հագուստները նոր էին ու շատ գեղեցիկ։ Ես միայն նոր նկատեցի, որ Կատյայի մազերը գզվգզված են, դեմքը՝ ճանգռված, շորերը՝ կեղտոտ։

— Այս ի՞նչ է քո զգեստների վիճակը, ինչո՞ւ ես այսպես կեղտոտել,—նրա թևերից քաշելով գոռացի ես։ Կատյայի թևը պոկվեց, ես արագ վերցրի նրան և պոկված թևի հետ գցեցի արկղը։ Մայրիկը այդտեղ էր հավաքում այն անպետք իրերը, որ չէր ուզում տեղափոխել նոր բնակարան։

Հաջորդ օրը մենք սկսեցինք կապել մեր ունեցվածքը: Մայրիկը, հայրիկն ու Սուսաննան հավաքում էին տան իրերը, իսկ իմ խաղալիքները, դրանք այնքան շատ էին, այնքան շատ, որ երեք օր ես չէի կարողանում հավաքել:

Ահա և մեր նոր բնակարանը, երկու սենյակ, լողարան, խոհանոց, մեծ պատշգամբ: Բոլորս դասավորում էինք իրերը: Ես էլ պատշգամբում ինձ համար մի հարմար անկյուն ընտրեցի ու ճիշտ մեր բնակարանի նման նոր բնակարան շինեցի:

— Լա՞վ է,— հարցրի ես իմ նոր տիկնիկին:

Նա նայեց ինձ ու ոչինչ չպատասխանեց: Ես հիշեցի իմ կատյային. նա հիմա եթե այստեղ լիներ, իմ կառուցած բնակարանի համար կուրախանար ճիշտ այնպես, ինչպես մայրիկն ուրախացավ, երբ առաջին անգամ մտանք նոր բնակարանը:

Ես դասավորեցի իրերը, ամեն բան իր տեղը դնելուց հետո, դարձա նոր տիկնիկիս. «Հավանո՞ւմ ես» — հարցրի: Նա նայեց ինձ ու ձայն չհանեց: Ա՜խ, ինչպես կուրախանար Կատյան: Ես տխրեցի: Ես նայում եմ նոր տիկնիկի աչքերին. այնտեղ ոչինչ, ոչինչ չկա,— նա միայն ժպտալ գիտի, նա ժպտում է նաև այն ժամանակ, երբ ես տխուր եմ, երբ իմ աչքերից արցունքներ են թափվում:

... Կատյա՜ս... նա հասկանում էր ինձ, մենք միասին էինք կրկնում մանկապարտեզում սովորած ոտանավորներն ու երգերը: Կատյան գիտեր, թե ո՛ր ճաշն է ավելի շատ սիրում: Կատյան ճանաչում էր իմ մանկապարտեզի ուսուցչուհուն, մեր խմբի երեխաներից շատերին...

— Ինչո՞ւ ես լաց լինում, Անահիտ,— հանգիստ կռանալով և ուշադիր ինձ նայելով, հարցրեց հայրիկս:

— Կատյայիս համար,— պատասխանեցի ես:

— Իսկ ի՞նչ է պատահել նրան:

— Ես թողել եմ նրան հին տանը, այն արկղի մեջ...

Չնայած ուշ էր, և հայրիկս շատ հոգնած, նա հագավ կոստյումը և դուրս եկավ տանից: Քունս տանում էր, բայց ես սպասեցի, սպասեցի այնքան, մինչև եկավ Կատյան: Ես համբուրեցի նրան. կարծես մենք երկա՜ր, երկա՜ր ժամանակ չէինք տեսել իրար:

Կատյան ուրախ էր: Մենք քնեցինք հանգիստ. չէ՞ որ Կատյան էլ էր շատ ուզում, որ նոր բնակարան տեղափոխվենք, իսկ հիմա նա նոր բնակարանում էր, ինձ մոտ...



Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ



# ԳՐԻԳՈՐ ՏԱԹԵՎԱՑԻ

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

Խորն է Տաթևի ձորը, բերնեբերան լցված անլռելի շառաչով, թանձրացած կապույտ ստվերներով, ժայռ ու մացառով: Թե՛ ծերպից քար է գլորվում, գահավիժում է մերթ քարերի խփվելով, մերթ օդում գծելով մի վայրենի ծիր: Ու երբ հասնում է ցած, շուրջը փռում է կայծ տվող, այրվող որձաքարի խանձահոտը:

Ջրատակում՝ գետափին քարե կամուրջի հետքեր կարելի է գտնել: Այդ նշանակում է՝ ինչ-որ ժամանակ այստեղ գետանցում է եղել: Իսկ հիմա, ահա, մնացել է կամուրջի մնացորդների միջից ծայր առնող հին մի արահետ, եղծմոռացված ճանապարհի հետքը, որ ոլորքներ է տալիս և գալարվելով ելնում զառիթափն ի վեր՝ դեպի ձորի կախ պռունկը: Միայն տեղ-տեղ մաշվում է այդ արահետի հնացած գոտին, թվում է՝ ուր որ է կկտրվի իսպառ: Սակայն, գնում, շարունակվում է կրկին, նորից մագլցում իրեն վաղուց, երևի մի հազարամյակ ծանոթ դժվարին տեղանքով:

Վերևում վանքն է: Դարերի ծանրության տակ նա արդեն տասնյակ ճաք է տվել:

Վանքի մերձ թեք տափարակի վրա հնադարյան շինություններ կան, բազալտաշար, քանդակապատ: Նրանց սրբատաշ երեսներին իր նրբահյուս թաղիքն է փռել լեռնաշխարհի զարմանալի բազմագույն քարաքոսը:

Այստեղ է եղել Տաթևի նշանավոր համալսարանը, որին մի 570 տարի առաջ, վերջին անգամ, շունչ ու կենդանություն տվեց գիտնական-ուսուցիչ Գրիգոր Տաթևացին:

Ես նստում եմ պատից ընկած մի քարաբեկորի: Քիչ հեռու, արևգակի տակ տաքանում է կանաչ զմրուխտ հագած, մի համարձակ մողես: Այստեղից երևում են ձորի կամուրջի մնացորդները, գետի



մյուս ափին՝ ինձ այստեղ բերող արահետի կտրտված մասունքը և փշոտ մասրենիներ:

Գետի ջրերի շառաչը խլացել է, կորցրել զորությունը: Տարածությունից է, ձորի խորությունից:

Սակայն այլ մի ձայն է տիրապետում այս շինվածքների մեջ, պատմության հեռավոր շշուկը, որ թեպետ կցկտուր, բայց հանդարտ համբերությամբ, պատմում է հայ նշանավոր ուսուցչի մասին իր իմացածը...

Պատմությունն ասում է, թե Գրիգոր Տաթևացին ծնվել է 1346 թվականին, Վայոց Ձորում (Եղեգնաձոր): Ու թե պատանի հասակից գալով Տաթևի համալսարանը, նա մոտ քառասուն տարի աշակերտել է նույնպես մեծ գիտնական և ուսուցիչ Հովհաննես Որոտնեցուն, նրա համալսարանի հետ, ըստիպված, անվերջ թափառել տեղից-տեղ, գավառից-գավառ:

Պատմությունը տեղեկացնում է, թե նրանք խուսափում էին մերթ Հայաստանը տակն ու վրա անող Լանկ-Թամուրի բարբարոս զորքերից, մերթ փախչում սովից ու գրկանքներից, որ հետամուտ էին նրանց ամեն քայլափոխին: Սովորում էին, որտեղ խաղաղ ու ապահով մի անկյուն գտնեին, անառիկ վանքերի պատերի տակ, սար ու ձորում, քարանձավներում: Եվ տանում էին իրենց հետ ինչ ունեին՝ ձեռագիր ավարտված ու կիսատ մատյաններ, ուսից կախ մախաղների մեջ՝ ներկ ու թանաք, գրի գործիք, գրիչ...

Հայտնում է պատմությունը, թե այս եռամեծ ուսուցիչ Որոտնեցի Հովհանը իր աշակերտներին սովորեցնում էր ժամանակի բոլոր գիտությունները, պահանջում լինել ջերմ հայրենասեր, մաքուր պահպանել հայոց լեզուն, կռվել Եվրոպայից եկած կրոնավորների դեմ գրով ու խոսքով: Քանի որ այս կրոնավորները հանդգնում էին հայերեն լեզվի և հայկական սովորույթների մեջ խցկել իրենցը, լատինական մեռած լեզուն և լատինացու օտար բարքը:

Եվ շարունակում է պատմությունը, թե Հովհաննես Որոտնեցու մահից հետո, աշակերտների թախանձանքով Գրիգոր Տաթևացին նրանց հետ միասին վերադառնում է Տաթև, շարունակելու իր ուսուցչի շնորհակալ գործը: Նորից քսան տարի ծաղկում է Տաթևի համալսարանը, շուրջը խմբում Հայաստանի տարբեր ծայրերից եկած բազմաթիվ պատանիների ու երիտասարդների:

Գրիգոր Տաթևացին էլ սովորեցնում է ժամանակի գիտությունները, ձեռագիր գիրք գրելու և ման-

քանդակելու արվեստը, հայ երգն ու երաժշտությունը, փիլիսոփայություն և հռետորիկա, տիեզերագիտություն և մաթեմատիկա, գրականություն, պատմություն, քերականություն, մարդակազմություն...

Պատմում են աշակերտները, թե ամեն արվեստի գիտակ ուսուցիչը գիշերն ամբողջ անքուն էր մնում, կարդում հայ և օտար գիտնականների, բարեկամների ու հակառակորդների մատյանները, հավաքում ինչ պետք էր: Իսկ ցերեկը պատմում էր, և դասավանդում, և սովորեցնում համբերատար:

Եվ քանի որ դժվարին էր ժամանակը, տարիները պատերազմական, թշնամին հանգիստ չէր տալիս նրանց: Խուսափելով սրից, տիրողների բռնություններից, սա էլ Որոտնեցու նման, աշակերտների հետ շարժվում էր Հայոց աշխարհի մի ծայրից մյուսը: Սովոր էին զրկանքների: Կարևորը գիտության լույսն էր, որին ապավինել էին մեծ ու փոքրով:

Պատմությունը տեղեկացնում է այնուհետև, թե կյանքի վերջին տարում Գրիգոր Տաթևացին նորից վերադարձավ Տաթև և այստեղ էլ, 1410 թվականին, վրա եկավ մահը...



Գրիգոր Տաթևացին իր աշակերտների հետ
*(Մանրանկար հայկական ձեռագիր մատյանից)*

Նա բազմաթիվ գրքեր ու մատյաններ է գրել իր աշակերտների և հետնորդների համար: Նրա «Հարցերի գիրքը» հայերեն լեզվով առաջին գիտական հանրագիտարան-դասագիրքն է: Գիրքը հայտնում է Տաթևացու, նույնիսկ մեր ժամանակին հարազատ մտքերը աշխարհի, բնության, տիեզերքի, մարդու կազմության, մարդկային բարձր առաքինությունների և շատ ու շատ այլ հարցերի մասին:

Գրիգոր Տաթևացու գրքերի բազմաթիվ օրինակներից մեկում պահպանվել և մեզ է հասել նրա դիմանկարը: Պատկառելի արտաքինով, ճերմակահեր, խելացի և գեղեցիկ դիմագծերով մի ծերունի, երկու ձեռքով հենվել է ծանր գավազանին: Շուրջըն աշակերտներն են բոլորել, ամեն մեկը մի գրքով, յուրաքանչյուրն ուշադիր ուսուցչի ձայն ու խոսքին:

Հաճախ էին այսպես շրջապատում իրենց ուսուցչին, երբ, մանավանդ, ավագ աշակերտները կարդում էին իրենց համալսարանական ավարտական ճառերը-ատենախոսությունները՝ բոլորի և հյուրերի ներկայությամբ...

Մի համբավավոր աշակերտ ասում է, թե Գրիգոր Տաթևացին բարձրահասակ, թիկնեղ ու գեղեցիկ տղամարդ էր, աշակերտները լսում էին նրան՝ իմաստուն խոսքով տարված և հիացած պատկառելի տեսքով: Անհայտ նկարչի, հավանաբար իր աշակերտներից մեկի նկարած այս խմբական դիմանկարը հաստատում է վերն ասած խոսքի ճշմարտությունը:

Ամեն ինչից հետո, Գրիգոր Տաթևացու մասին, իրենց գունավոր խոսքով պատմում են նրա ձեռքով կատարված, մատյանների լուսանցքներում պահվող մանրանկար-զարդանկարները:

Պատմում են այդ նկարները, թե ժողովրդական ուսուցիչն իր աշակերտներին նկարչությամբ էլ սովորեցնում էր՝ ամենից առաջ տեսնել կյանքի իրական պատկերը:

Երևանի Մատենադարանում խնամքով պահպանվում է նրա աշակերտների և, հատկապես, իր ձեռքով նկարազարդված մի մատյան: Տաթևացու նկարած մարդկանց, իրենց տեսք ու տարազով, հիմա էլ կարելի է հանդիպել Սյունիքի լեռնավերերում: Դրանք բարձրահասակ, սևաչք ու սևահոն, աշխատավոր կանայք ու տղամարդիկ են: Մարդը, ծառն ու ծաղիկը, յուրաքանչյուր մանրիկ զարդը նկա-

բիչը փոխ է առել իրեն շրջապատող աշխարհից։ Շնչում, ապրում է հայոց բնաշխարհը նրա նկարներում, որոնք իրենց գույն ու երանգով այնքան հարազատ և հասկանալի են ժողովրդին...

Դադարում է պատմության խոսքը նշանավոր հայ ուսուցիչ-գիտնականի մասին։ Լռում են նրա աշակերտները։ Մեզնից ժամանակով այնքա՜ն հեռու Տաթևացու կյանքի մանրամանը կարծես կորչում է, մնում է, ինչպես Տաթևի ձորի մեծ ճանապարհից մնացած մի արահետ, քարե կամուրջի մնացորդ։ Սակայն այդ իսկապես ճանապարհ է, նրա կյանքն իսկապես մի կամուրջ է, և բարձրաղեղ կամուրջ, մարդկային իմացությունները մի սերնդից մյուսին հասցնող կամուրջ։

Գրիգոր Տաթևացին իր կյանք ու գործով ջանացել է, որ մենք այսօր ծանոթ լինենք աշխարհի մեծ երևույթներին, գիտություններին ու արվեստին ավելի շատ, քան մյուս անցած դարերում ապրող, լույսի կարոտ մարդիկ։

# ՀԵՐԱՑԻՆ ՈՒ ՏԱԿԱՌԱԳՈՐԾԸ



ՆԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆ

**Նկարները հեղինակի**

*Մինչև ուշ գիշեր աշխատում էր Մխիթար Հերացին, հռչակավոր բժշկապետը։ Նրա առջև, սեղանի վրա թափված էին հազար ու մի տեսակ բույսեր, որոնց գաղտնիքներն էր կամենում թափանցել նա։*

*Հանկարծ թակեցին դուռը, և ընդհատվեցին նրա մտքերը։*

*Հերացին վերցրեց կանթեղն ու մոտենալով, բացեց դուռը։*

*Շեմքին կանգնած էր մի օտարական։*

*— Ներիր, բժիշկ, — ասաց նա, — որ անհանգստացնում եմ քեզ անպատեհ ժամին։ Հեռվից եմ գալիս։ Լույս նկատեցի և քեզ մոտ եկա։*



Հերացին նրա հրավիրեց օտարականին։

— Երկար ճանապարհ եմ կտրել քեզ մոտ գալու համար,— ասաց վերջինս,— թույլ տուր՝ առաջարկել քեզ երեք հարց։

— Պատրաստ եմ քեզ լսելու,— ասաց Հերացին։

— Ասա ինձ, բժիշկ, ինչո՞ւմն է քո բժշկության գաղտնիքը։

— Իմ բժշկությունը գաղտնիք չունի, պատասխանեց Հերացին։— Իմ բժշկությունը — սեր է։ Սեր դեպի ինձ նմանը, դեպի մարդը։

— Ասա ինձ, բժիշկ, դժվա՞ր է բժշկի պարտականությունը։

— Բժշկի աշխատանքը դըժվար է, երբեմն էլ չափազանց դժվար։ Բայց բժշկությունը պարտականություն չէ, զավակս։ Բժշկությունը կոչում է և խիղճ։

— Եվ մի վերջին հարց, բըժիշկ,— ասաց օտարականը։— Չե՞ս վերցնի դու ինձ աշակերտ։

— Քո երրորդ հարցին ես չեմ կարող պատասխանել, մինչև ինքդ չպատասխանես իմ հարցին,— ասաց Մխիթար Հերացին ու հարցրեց,— Ասա՛, հանուն հիվանդի կարո՞ղ ես զրկել քեզ ամեն ինչից։ Կարո՞ղ ես քո հանապազօրյա հացի փոխարեն հիվանդի համար դեղ գնել, կարո՞ղ ես անքուն գիշերներ անցկացնել նրա անկողնու մոտ, մոռանալով քո մերձավորին։ Եվ, վերջապես, ունա՞կ ես դու մի անգամ և ընդմիշտ ընդունելու, որ բժշկի աշխատանքը սոսկ պարտականություն չէ, այլ անհուն սեր դեպի մարդը, սրբազան գործ։ Խոսի՛ր ճշմարիտ, եթե ազնիվ մարդ ես։

Օտարականը շփոթվեց։

— Ես...ես ազնիվ մարդ եմ, բժիշկ,— ասաց նա,— և քեզ խաբել չեմ կարող։ Ավելի լավ է, ես կշարունակեմ զբաղվել տակառագործությամբ, ինչով ըզբաղվել եմ մինչև օրս։

Մխիթար Հերացին մոտեցավ ու գրկեց օտարականին։

— Ապրե՛ս, զավակս,— ասաց նա։— Դու հենց հիմա հրաժարվեցիր ապագայում հանցագործ դառնալուց։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Նկ. Շապիկի առաջին էջը՝
ՀԱՐՈՒԹՅՈՒՆ
ՁԱԲՄԱԲՁՅԱՆԻ

# ԱՊԱԿՈՒ մասին

ԲՈՐԻՍ ՖԻՆԿԻՆՇՏԵՅՆ

Ապակին մարդու կողմից օգտագործվող ամենահին և միաժամանակ ամենանոր նյութերից մեկն է: Ամենահինն է, որովհետև մարդու կողմից օգտագործվում է արդեն ավելի քան վեց հազար տարի և ամենանորն է, որովհետև հազարամյակները բավական չեղան մինչև վերջ ուսումնասիրելու և օգտագործելու նրա զարմանալի հատկությունները:

Մարդիկ ընտելանում են իրենց շրջապատին և դադարում են այն նկատել, ինչպես չենք նկատում օդը, որը շնչում ենք: Այս նույնը կատարվում է և ապակու հետ: Մենք հաճախ չենք՝ նկատում այն հսկայական դերը, որ խաղացել է ապակին մարդկության զարգացման պատմության մեջ: Պատկերացրեք, ինչպե՞ս մենք կապրեինք, եթե չլիներ ապակին: Մարդիկ կապրեին շենքերում առանց լուսամուտի, և կամ այդ շենքերը կունենային փոքրիկ լուսամուտներ՝ պատված եզան փամփուշտով: Չէր լինի էլեկտրականություն և մինչև իսկ նավթի լամպ, քանի որ դրա համար հարկավոր կլիներ ապակի: Շատերը չէին կարող կարդալ և ոչ էլ գրել առանց ակնոցների: Առանց օպտիկական սարքերի չէր կարող այսպես լայնորեն զարգանալ գիտությունը. չէ՞ որ հեռադիտակները մարդուն հնարավորություն տվեցին ծանոթանալ տիեզերական տարածությունների և մարմինների, իսկ մանրադիտակները օգնեցին մարդկանց հայտնագործել անսահման փոքր էակների աշխարհը, հետազոտել շատ նյութերի կառուցվածքը:

Առանց ապակու չէին լինի հիվանդանոց, կինո, ինքնաթիռ, հեռուստացույց և այլն:

Առանց ապակու կյանքը կանգ չի առնի, բայց կդադարի մարդկային կուլտուրայի հետագա զարգացումը: Ահա ինչպիսի մեծ նշանակություն ունի մեր կյանքում ապակին:

Երբ խոսում են ապակու մասին, ապա կարծում են, թե այն անկայուն և փշրվող նյութ է, որին չի կարելի ծռել և հարվածել: Բայց ահա սկսեցին ապակուց թելեր պատրաստել, որոնք


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 1—44—83, 2—39—06։

ՎՖ 01804 Պատվեր 1167 Տպաքանակ՝ 7800։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/IX 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։
Գինը 20 կ.։




մի քանի անգամ բարակ են մարդու մազից: Ապակին հայտնաբերեց իր նոր հատկությունը: Ապակու թելերը շատ դիմացկուն են. մետաղից մի քանի անգամ ավելի դիմացկուն են, ավելի ճկուն: Այն կարելի է ցանկացած ձևով ճկել. նրանից կարող գործել, մինչև իսկ նրանից պարան հյուսել, որը սովորական մետաղե պարանից ավելի դիմացկուն է. չի վախենում բարձր ջերմաստիճանից, չի փտում ինչպես սովորական պարանը և չի ժանգոտվում ինչպես մետաղե պարանը: Ապակու թելից և պլաստիկ խեժից պատրաստում են ապակեպլաստիկներ, որոնք փոխարինում են փայտին, երկաթին և այլ շատ նյութերի: Նրանցով կարելի է ծածկել տանիքները, պատրաստել կահույք, վագոններ, ավտոմեքենաների թափքեր և նավակներ: Անգլիայում, օրինակ, այժմ թողարկում են ծածկված, ապակեպլաստիկ թափքերով հեծանիվներ:

Դուք բոլորդ գիտեք, որ լույսը տարածվում է միայն ուղիղ գծով, և դրա համար ստիպված էին պատրաստել բարդ սարքեր, որպեսզի լույսի ուղղությունը փոխվի, ինչպես օրինակ, սուզանավի պերիսկոպի մեջ: Այժմ գիտնականները աշխատում են այն ուղղությամբ, որ ստեղծեն նոր օպտիկական սխեմաներ լուսաթափանց ապակե թելերից, որոնցով պատկերը կարող է արվել ծուռ ճանապարհներով: Այդպիսի սարքերը լայն կիրառում կգտնեն բժշկության, հեռուստատեսության մեջ և գիտության ու տեխնիկայի շատ ուրիշ բնագավառներում:

Բայց ապակու փորձարկման մեջ նորը հանդիսանում է ո՛չ միայն ապակու թելը: Պայքարելով ապակու միակ թերության՝ փշրվելու դեմ, գիտնականները ստեղծում են շատ դիմացկուն ապակիներ: Շատերը երևի գիտեն չկոտրվող ապակու՝ ստալինիտի մասին, որը այժմ արտադրվում է մեր արդյունաբերության մեջ՝ ավտոմեքենաների, ինքնաթիռների, երկաթուղային վագոնների և նավերի համար: Ստալինիտը այնքան դիմացկուն է, որ երբ, օրինակ, այդ ապակու թիթեղը դնեն աթոռների թիկնակին և երկու մարդ կանգնեն վրան, այն չի կոտրվի, այլ միայն կճկվի: Կամ այլ օրինակ. մի գործարանում ստալինիտի թիթեղը պահել էին վերամբարձ կռունկի օգնով, ներքևից նրանից կախել էին ավտոմեքենա և բարձրացրել օդ: Ստալինիտը չէր կոտրվել:

Այժմ ստացել են նոր, շատ ամուր անեալի ապակի՝ սիտալլ, բաղկացած մանր բյուրեղիկներից: Այդ նոր նյութը ամրությամբ չի զիջում պողպատին, նրա համար վտանգավոր չեն ջերմաստիճանի խիստ փոփոխությունները. (իսկ դուք գիտե՞ք, որ, օրինակ, սովորական բաժակը ճաքում է, երբ նրանում անմիջապես տաք ջրից հետո լցնենք սառը). քիմիական դիմացկանությամբ այն զիջում է միայն ազնիվ մետաղներին:

Սրանք մի քանի օրինակ են՝ մարդու կողմից ապակու նոր հատկությունների օգտագործման: Բայց կարելի է բերել այդպիսի բազմաթիվ օրինակներ: Ապակին կարող է լինել ջերմադիմացկուն, կան ապակիներ, որոնց մեջ կարելի է մեխ խփել, որոնց կարելի է սղոցել և ռանդել, մշակել մեքենաներով, ինչպես մետաղն են մշակում: Ապակին կարող է անցկացնել ջերմային, ուլտրամանուշակագույն և ռենտգենյան ճառագայթներ կամ կլանել նրանց: Ապակուց պատրաստում են բլոկներ, որոնցից կառուցելու են ամբողջ շենքեր, նրանցից պատրաստում են տարբեր գեղարվեստական իրեր, ինչպես օրինակ, Կրեմլի աստղերը կամ Մոսկվայի համալսարանի աշտարակի ծողը: Ապակուց կարելի է կառուցել հեռադիտակ, որով հնարավոր կլինի դիտել աստղեր, որոնց լույսը մեզ է հասնում միլիարդավոր տարիներում, և ասեղ-մանրադիտակ, ուր ասեղի ծայրին կա մանրանկարային օբյեկտիվ, իսկ ներսում լուսավորող սարք, և շատ ու շատ այլ բաներ:

Այժմ չի կարելի պատկերացնել գիտության և տեխնիկայի որևէ բնագավառ, ուր չօգտագործվի ապակին: Շատ բան արդեն արված է, գիտնականները շարունակում են համառ աշխատանքն այդ հիանալի նյութի նորանոր հնարավորությունների բացահայտման ուղղությամբ:



Նկ. ՌՈՒԲԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ




Յուրի Գագարինը թռչում է

ԱԶԱՏՅԱՆ ԳԱԳԻԿ
(Նոյեմբերյանի շրջան, Կողբ գյուղ, 9 տարեկան)



Հյուսքերով աղջիկ (Ջրաներկ)



Աղջկա գլուխ (Մատիտանկար)

ՔՈՉԱՐՅԱՆ ՎԱՀԱՆ (Երևան, 12 տարեկան)